# ԾԱՂԿԱՍՏԱՆ ԼԵՌՆԵՐԻ ՍՏՈՐՈՏՈՒՄ



«Ծիծեռնակը» վրանների տակ է, կամ փայտաշեն վրանատիպ տնակներում: Հեռվից անմիջապես աչքի չի ընկնում: Բայց մոտիկից ծանոթացողը տեսնում է, թե որքան է տարբերվում Վանաձորի մյուս ճամբարներից:

Ճամբար մտնելուն պես օդն ասես փոխվում է, ավելի է թանձրանում ծառերի ու ծաղիկների բուրմունքը: Ծաղկաշղթաների նման իրար են հաջորդում փոքրիկ մարգերն ու պուրակները, որոնք լավ ձևավորված են, խնամքով մշակված ու մաքրված:

Ամեն տարի ճամբարի բացումից առաջ այստեղ նախ ծաղկանոցներն են կարգի բերում:

Պատանի բնասերների խմբակի ղեկավար ընկեր Պավլիկն իր սաների հետ ճամբարում աճեցրել է վաթսուն տեսակից ավելի ծաղիկ ու թուփ: Ճամբար այցելողներին ու հյուրերին միշտ թվում է, թե այստեղի վարդերը ավելի խոշոր են ու բուրումնավետ, յասամանի տեսակները՝ հազվադեպ նրբերանգներով, կակաչները՝ ավելի զգայուն ու ավելի վառ: Եվ երբ պիոներների բացատրությունները լսելով քայլում ես ճամբարում, քեզ զգում ես աշխարհի գեղեցիկ պարտեզներից մեկում, որը շրջապատված է անտառածածկ լեռներով, և ճամբարն ինքն էլ նման է դրանց ստորոտում փռված ծաղկաստանի:

## ՋԵՐՄԱՏՈՒՆ ՃԱՄԲԱՐՈՒՄ

Ջերմատունն այնքան էլ սովորական բան չէ ճամբարի համար... Ճամբարները միայն ամռանն են գործում, իսկ այդ ամիսներին ջերմատունը ինչի՞ է պետք: Այո, այսպես կարելի է մտածել, մինչև «Ծիծեռնակի» մեծ ու լուսավոր ջերմատուն մտնելը: Իսկ մտնելուց հետո, երբ տեսնում ես մարգ-մարգ փարթամ աճած սամիթը, ազատքեղը (պետրուշկան), սոխը, ամսական բողկը, զգում ես, թե որքան լավ է, որ այն կա: Բանջարաբույծների խմբակի անդամները փոխվում են յուրաքանչյուր հերթափոխում: Սակայն միշտ էլ գտնվում են հողը սիրող, հողի լեզուն հասկացող, աշխատասեր պատանիներ: Նրանց լավ խնամքի շնորհիվ ջերմոցից ստացված թարմ կանաչեղենը լիուլի բավարարում է ճամբարականներին: Իսկ ճամբարը փոքր չէ, յուրաքանչյուր հերթափոխում 350 պիոներ-դպրոցական է հանգստանում այստեղ:



Եվ դժվար է, և հաճելի գրել սիրելի աշակերտուհու մասին:

**ԱՐԱՔՍՅԱ ՊՈՂՈՍՅԱՆԸ** սովորում է Երևանի Լենինյան շրջանի № 50 դպրոցի 7-րդ դասարանում: Հիշում եմ հայ գրականության առաջին դասը: Ուսուցանում էի Կապուտիկյանի «Խոսք իմ որդուն» բանաստեղծությունը: Երբ կարդում էի վերջին տողերը, նկատեցի, որ աշակերտուհիներից մեկը մի փոքր բարձրացավ տեղից, իսկ աչքերը ողողված էին արցունքներով: Մոտեցա, շոյեցի գլուխը, հարցրի անունը:

— Արաքսյա Պողոսյան,— ամոթխածությամբ շշնջաց նա:

Հետագայում պարզվեց, որ Արաքսյան գրելու փորձեր է անում: Առաջին բանաստեղծությունները պարզունակ էին, չհղկված, բայց աստիճանաբար փոփոխվեցին:

Արաքսյայի բանաստեղծությունները սիրով են կարդում դպրոցի պատանի ընթերցողները: Նա գրում է բարու, աշխատասիրության, հայրենասիրության, մարդկային փոխադարձ հարգալից վերաբերմունքի մասին: Եվ երբեք չի հանգստանում ձեռք բերածով:

*Հ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ*
*Երևանի № 50 դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի*

## «ՀՐԱՇԱԳՈՐԾՆԵՐԸ»

Այս խմբակի բոլոր անդամները աղջիկներ են, ղեկավարը՝ նույնպես:

Տղաները երևի կմտածեն, թե ինչ հրաշք կարելի է գործել առանց իրենց մասնակցության: Սակայն դա այդպես չէ, և ով չի հավատում, թող այցելի ճամբար և մասնակցի խմբակի հերթական պարապմունքներից մեկին:

Նրանց բոլոր պարապմունքները անցկացվում են խոհանոցում: Սպիտակ խալաթներով ու թասակներով աղջիկներն այստեղ սովորում են զանազան թխվածքներ պատրաստել: Ուտողները, այսինքն երեխաները, վկայում են, որ դրանք անչափ համով են: Ճամբարում սովորածը աղջիկները տուն վերադառնալուց հետո պատրաստում են նաև իրենց տներում: Շատերի մայրերը դրա համար նամակով շնորհակալություն են հայտնել ճամբարին:

# Գարուն է բացվել

Ցայտում են ջրերը՝ գարուն է ոսկե,
Կյանքի թրթռուն լարերն են երգում,
Ծաղկած գարնան մեջ անուրջ կա լուսե,
Կապույտ մշուշում սիրտս է անրջում:

Կյանքը ծփում է անսահման սիրով,
Հեշտ ընթերցելի մի գիրք է դարձել,
Շուրջս լցվել է աշխույժով, նորով,
Ի՜նչ ուրախություն, գարունն է բացվել:



# Հայաստանի անտառները

Ծաղված աշնան թովչանքներով.
Հմայքներով հազար գույնի,
Ժպտում են լուռ ու քնքշաթով
Անտառները Հայաստանի:

Պարուրվել են լեռների մեջ,
Շուրջպար բռնել մի գեղանի
Ու նազում են, նազում անվերջ
Անտառները Հայաստանի:

Նրանք հայոց աշխարհի մեջ
Կանգնել են սեգ ու գեղանի
Եվ երգում են, երգում մեզ հետ
Անտառները Հայաստանի:

# Որոնում

Ես որոնում եմ մի լույս ճանապարհ
Ուր բարությունն է միայն թևածում,
Ես որոնում եմ մի ուրիշ աշխարհ
Ուր միայն մանուկ գարունն է բուրում:

Եվ հասկանում եմ, որ երազանքն իմ
Ես այս աշխարհում պետք է որ գտնեմ,
Մի լույս ճանապարհ, մի ուրիշ աշխարհ,
Ես պետք է փնտրեմ, շարունակ փնտրեմ...

# ՄԱՐԶԱՀԱՆԴԵՍ

Մարզական մրցումներն սկսելուց առաջ ճամբարականներն այցելում են զոհվածների հուշարձանին, նրա հավերժական կրակից վառում ջահը և բերում ճամբար: Ապա երդվում են ազնվորեն ու անաչառ վարել մրցումները, հետո անցնում են բուն մրցումներին:

Մրցումները ընթանում են լարված ու անզիջում պայքարում, ինչպես շրջանային ու միջճամբարային մրցումները:

«Ծիծեռնակ» ճամբարում կան նաև փայտամշակման, նկարչական, երաժշտական և այլ խմբակներ: Այդ բոլորի շնորհիվ ճամբարի առօրյան բազմազան ու հետաքրքիր է դառնում: Յուրաքանչյուր ճամբարական մտածում է ամեն ինչ անել լավ ու գեղեցիկ, որպեսզի բարձր պահած լինի իր ջոկատի պատիվը:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*



# Ս Պ Ա

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

Մի քանի տարի էր ինչ ստացել էինք հորս սև թուղթը, բայց տատս չէր հավատում: Ամեն առավոտ ծնկի էր իջնում անհիշելի ժամանակներից մեզ հասած, բազմաթիվ մատնահետքերից խունացած սրբապատկերի առաջ և անձայն աղոթում: Ապա դուրս էր գալիս, ձեռքը դնում ճակատին, նայում գյուղի վերևի բլրից ոլորապտույտ իջնող ճանապարհին, որտեղով գալիս էին պատերազմից վերադարձող զինվորները:

Հորիցս, որպես հիշատակ, մնացել էր նրա տնկած բալենին: Նայելով բալենուն, տատս ժպտում էր ու չէր հավատում սև թղթին:

Ես, աշխարհում ամեն ինչից շատ, այդ բալենին էի սիրում: Նրա ճյուղերի, տերևների, արմատների մեջ տեսնում էի հորս, խոսում հետը: Եվ երբ մեկն ու մեկը նեղացնում էր, կամ քաղցը շատ էր տանջում, գնում էի բալենու մոտ ու լաց լինում:

Օրվա տարբեր ժամերին տատս ձեռքի ափով աչքերին հով անելով, նայում էր գյուղ մտնող ճանապարհին, հարցնում ինձ, թե զինվորի շորերով մարդ չի՞ երևում արդյոք:

Այսպես անցնում էին օրերը, ամիսները, տարիները: Շատ զինվորներ էին վերադարձել: Էլ ոչ ոք զինվորի չէր սպասում, բայց տատս ամեն օր ծնկի էր իջնում սրբապատկերի առաջ, ապա դուրս գալով նայում գյուղի վերևի բլրից իջնող ճանապարհին:

Մի օր էլ, սովորականի նման, ձեռքը ճակատին, վերև նայեց ու քիչ էր մնում սիրտը մարեր հուզմունքից:

— Հրա՛նտ... Այ տղա Հրա՜նտ...,— կանչեց հազիվ շունչը տեղը բերելով,— մի նայիր վերև... Էս կուրացած աչքերս լավ չեն ջոկում...

Ես նայեցի ճանապարհին: Այնտեղից, մեծ-մեծ քայլերով, ուսապարկը շալակին, իջնում էր զինվորական համազգեստով մի մարդ:

— Հա՛, տա՛տ,— ճչացի ես ու վազեցի:

— Կաց, Հրանտ, կաց, ես էլ եմ գալիս,— հազիվ լսելի կանչեց տատս, բայց ես արդեն հեռու էի:

Ուրիշ կանայք ու երեխաներ էլ էին վազում: Առաջինը ես հասա:

— Հայրի՛կ...,— կանչեցի ու փաթաթվեցի վզին:

Զինվորը հանկարծակի եկած, գրկեց ինձ: Համբուրում ու լաց էր լինում, համբուրում ու լաց էր լինում: Բոլորը շրջապատել էին մեզ: Իսկ զինվորը համբուրում ու լաց էր լինում:

— Հակոբ ջան, ախր դա քո տղան չի,— փղձկալով ասաց մի կին:

Զինվորը չէր լսում, համբուրում ու լաց էր լինում: Ապա ինձ գրկած քայլեց դեպի գյուղամեջ: Վազելով գալիս էր ուշացած մի տղա:

— Հրեն քո տղան,— ասաց նույն կինը, մաքրելով արցունքները:

Տղան վազելով մոտեցավ, խեղճ ու կրակ, վիզը ծռած կանգնեց հեռվում:

Հանկարծ հեկեկոցը դուրս թռավ կոկորդիցս: Շաքարի կտորը շպրտեցի ճանապարհի փոշիների մեջ ու վազեցի դեպի տուն: Ճանապարհին հանդիպեց տատս, որը ժամանակից ու սպասումից փոքրացել էր և կորացել:

— Հրանտ, ի՞նչ եղավ...,— կանչեց ետևիցս, բայց ես չպատասխանեցի: Հասա տուն, մտա այգի, փաթաթվեցի բալենուն ու երկար լաց եղա:

Տատս այլևս գյուղ վերադարձող զինվոր չտեսավ՝ կարոտը նրան ժամանակից շուտ տարավ այն աշխարհը: Սակայն վերջին պահին էլ, երբ արդեն չէր կարողանում բարձրանալ անկողնուց, խնդրեց որ սրբապատկերը մոտիկ բերեն ու երկար ժամանակ աչքերը փակ աղոթում էր: Իսկ շուրթերին ժպիտ կար...

# Ս ՈՒ Մ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ



Զինվորի թևերն սկսեցին թուլանալ: Ինձ ցած դրեց գրկից, ուսից իջեցրեց ուսապարկը, բացեց, այնտեղից մի կըտոր շաքար հանեց ու բացելով ափս, դրեց մեջը: Ապա վերցրեց ուսապարկը, գնաց դեպի հեռվում կանգնած տղան: Բոլորը շարժվեցին նրա ետևից: Ես մնացի մենակ, անշարժ ու գլխիկոր կանգնած, ափիս մեջ սեղմած ձյան նման անմեղ ու սպիտակ շաքարի կըտորը: Ներսումս անում, ուռչում էր հիասթափությունը: Բոլորը գնում էին զինվորի ետևից, որը գրկած տանում էր ուրախության արցունքներից փայլող աչքերով տղային: Կյանքում առաջին անգամ զգացի մենակությունը:

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*բանասիրության դոկտոր*

## 88. ՊԱՏԱՍԽԱՆ ՄԱՐԻՆԵ ԲԱԿՈՒՆՑԻՆ. Ո՞ՐՆ Է ՕՏԱՐ ԲԱՌԵՐԻ ԳՈՐԾԱԾՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆԸ

Այն նամակների մեջ, որ այս «Զրույցների» առիթով մեր ընթերցողները գրում և ուղարկում են խմբագրություն, կա մեկը, որ աչքի է ընկնում լավ շարադրանքով և կարևոր մի հարցի սրտացավ մտահոգությամբ: Այդ նամակը գրել է աշակերտուհի Մարինե Բակունցը Գորիսի շրջանի Վերիշեն գյուղից:

Ի՞նչն է մտահոգում Մարինեին: Այն, որ կենցաղում շատ հաճախ լըսվում է այնպիսի խառնածին խոսք, որ ո՛չ հայերեն է, ո՛չ ռուսերեն, այլ վերին աստիճանի անճաշակ մի խառնուրդ. «Թե **սպիչկա** ունես՝ տուր»,— ասում է մեկը, «Խի՞ չունեմ, հո **բեդնի** չեմ»,— պատասխանում է մյուսը: «Աղջիկդ ինստիտուտ ընդունվե՞ց»,— հարցնում է մեկը, «Չէ, հլա **շկոլնիկ** ա»,— լինում է պատասխանը: Իրավացի վրդովմունքով այսպիսի օրինակներ է բերում Մարինեն, դժգոհում, որ մեր լեզվում անհարկի օտարաբանություններ շատ են գործածվում և դրա օրինակներից մեկն էլ համարում է այն, որ գործ ենք ածում **ժուռնալիստ** բառը, երբ ունենք դրա հայերեն համարժեքը՝ լրագրող:

Այս երևույթի մասին իրենց նամակներում նույն վերաբերմունքն են ցուցաբերել Հակոբ Մարտիրոսյանը՝ Կարմիրի շրջանի Արծվաշեն գյուղից, Ռուզան Ասատրյանը՝ Արագածի շրջանի Ծիլքար գյուղից և էլի ուրիշներ:

Այս առիթով ես Խաչատուր Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպից մեջ կբերեմ մի հատված, որ և՛ հարցի պատասխանը կլինի, և՛ ցույց կտա, թե որքա՛ն հնից է գալիս խառնածին լեզվով խոսելու հոռի սովորույթը. «Ախր որ ասում ես **փրոքուլիվաթսա** արի, **աքո՛չնա** եմ, **օփժաթսա** էլա, **փրոշենի** տվի, **սանյաթիե** շատ ունիմ, գլուխս **քրուժիթսա** էլավ... Աչքիս լիս՝ մի մտածի՛ր թե լողն ի՞նչ կասի: Իսկ գիտուն, լուսավորյալ մարդը նա է, որ ամեն լեզու քանի կարա իստակ խոսա: Դու քո լեզուն որ իստակ խոսաս, ի՞նչ վընաս ունի, հենց գիտում ես խելքդ ձեռիցդ կառնե՞ն, թե սովորած իմաստությունը ջուրը կթափի...» և ապա. «Ձեզ եմ ասում՝ ձեզ՝ հայոց նորահաս երիտասարդք՝ ձեր անումին մեռնեմ, ձեր արևին ղուրբան, տա՛սը լեզու սովորեցեք, ձեր լեզուն, ձեր հավատը դայիմ բռնեցեք»:

Դուք, իհարկե, գիտեք, թե Աբովյանն ինչու է իր վեպն այսպիսի բարբառային լեզվով գրել՝ իր ժամանակի ընթերցողին հասկանալի լինելու համար, այլապես նա կարող էր մաքուր գրական լեզվով գրել, ինչպես և գրել է ուրիշ գործեր: Աբովյանի տված խրատների մեջ ամենից էականը և այսօր էլ իր ուժը պահողն այն է, որ պետք է պահպանել ու գուրգուրել մայրենի լեզուն՝ շա՛տ լեզուներ իմացեք, հատկապես ռուսերենը, բայց ձեր լեզուն ամուր պահեցեք, ձեր լեզվով, ինչպես ամեն մի այլ լեզվով, մաքուր խոսեցեք, հասկացող մարդը նա է, որ իր իմացած ամեն լեզվով մաքուր է խոսում:

Հարյուր քառասուն տարվա հնություն ունեցող այս խրատների մեջ չկա մեկը, որ վերանայման կարիք ունենա: Խնդիրն, ուրեմն, միանգամայն պարզ է վաղուց ի վեր՝ պետք է մաքուր հայերեն խոսել: Դժվարը դրա կատարումը, կենսագործումն է: Եթե դժվար չլիներ՝ Խաչատուր Աբովյանի խրատները կատարված, ուրեմն և հնացած կլինեին: Ուրեմն, դրանք ի կատար ածելու համար դեռևս շատ ջանք ու աշխատանք պիտի թափել: Մեր «Զրույցները» էլ այդ նպատակին հասնելու համեստ փորձեր են: Դուք էլ, սիրելի ընթերցողներ, ամեն մեկդ ձեր միջավայրում պետք է նպաստեք դրան: Եվ եթե ամեն մեկս մեր ուժերի ու հնարավորությունների չափով օգտակար լինենք գործին՝ արդյունքը մեծ կլինի:

Խնդիրը բարդացնում է այն, որ դյուրին չի որոշել, թե ո՞րն է օտար բառերի գործածության ստույգ սահմանը, չէ՞ որ ոչ մի կենդանի լեզու չի կարող գոյություն ունենալ առանց ուրիշ լեզուներից կատարված և կատարվող փոխառությունների:

Տեսականորեն թվում է ավելի քան պարզ՝ առանց կարիքի և անհրաժեշտության չպետք է օտար բառեր գործածել: Բայց հենց որ բանը գալիս է գործնականին, երբ ամեն մի առանձին դեպքում ուզում ենք որոշել այդ «կարիքի և անհրաժեշտության» չափն ու սահմանը՝ հանդիպում ենք դժվարությունների:

Դատենք օրինակներով:

**Կուլտուրա** օտարամուտ բառն ունի հայերեն համարժեքը՝ **մշակույթ**: Ասում և գրում ենք **մշակույթի տուն**, **մշակութային կապեր**, **հոգևոր մշակույթ** և այլն: Հիանալի՛ է: Բայց կարո՞ղ ենք ասել՝ **այս հիմնարկում տիրում է աշխատանքային բարձր մշակույթ**, կարո՞ղ ենք ասել՝ **սպասարկման մշակույթ**, **դասավանդման մշակույթ** և այլն: Տեսնո՞ւմ եք, որ չի լինում, այս օրինակներում իրավունքը **կուլտուրա** բառինն է: Հայերեն բառը կարծես ձգտում է վանել օտարամուտ բառը, բայց բոլոր անկյուններից դուրս մղել չի կարողանում: Զարմանալի բան. կարծես ամեն մի բառ ունի կենսական իր տարածությունը և բառերի միջև լուռ պայքար է մղվում իրենց իրավունքը նվաճելու համար:

Տարօրինակ չէ՞, որ լեզվի նույնիսկ ամենահմուտ վարպետները չեն կարողանում կռահել, թե ինչ ելք կունենա այդ պայքարը: Մի ժամանակ հայերենում գործածական են եղել **տելեֆոն**, **վելոսիպեդ**, **դիպլոմատ**, **պալտո**, **զավոդ**, **գեոգրաֆիա** և նման օտարամուտ բառեր՝ մինչև որ նրանց դուրս են մղել **հեռախոս**, **հեծանիվ**, **դիվանագետ**, **վերարկու**, **գործարան**, **աշխարհագրություն** հայերեն բառերը: Եվ Վահան Տերյանի նման բանաստեղծը, լեզվի մեծ վարպետը դեմ է եղել հիշածս բառերից շատերին, համոզված, որ դրանք չեն կարող օտար բառերի լիիրավ փոխարինողը դառնալ: Ժամանակն ապացուցեց հակառակը:

Տերյանն իր սքանչելի բանաստեղծություններից մեկում գործ է ածել **սուվենիր** բառը՝ բնավ չկարծելով, թե մի օր դրան փոխարինելու կգա **հուշանվեր** որքան արտահայտիչ, նույնքան գեղեցիկ բառը:

Ինչպես ուրիշ լեզուներում, այնպես էլ հայոց լեզվում անընդհատ պայքար է մղվում օտարամուտ և մայրենի բառերի միջև, իսկ արդյունքը որոշում է ոչ թե այս կամ այն անհատի անձնական ճաշակը, այլ լեզվի զարգացման կենդանի ընթացքը:

Շատ օրինակներ կարելի է մտաբերել ցույց տալու համար, թե ինչպես, հայոց լեզվի ճկունության շնորհիվ, ստեղծվում են օտար բառերի հայերեն հիանալի համարժեքներ՝ **ինտերվյու-հարցազրույց**, **լաուրեատ-դափնեկիր**, **կոնկուրս-մրցույթ** և այլն: Բայց կարելի է մտաբերել նաև հակառակ բնույթի

օրինակներ՝ ցույց տալու համար, թե ի՞նչ անդուրեկան արդյունքներ է տալիս օտար բառն անպայման հայացնելու ձգտումը. կարելի՞ է, օրինակ, անսամբլին **համույթ** ասել, կոնյակին՝ **բարկօղի**, տանկին՝ **հրասայլ**, սապոգին՝ **երկարաճիտ կոշիկ** և այլն: Դրանք հնչում են արհեստական, ուստի և չունեն կիրառության հեռանկար: Ինչի՞ նման կլինի, եթե, օրինակ, **անսամբլային խաղ**-ի (տարբեր դերասանների միմյանց հետ ներդաշնակված խաղի) փոխարեն ասենք **համույթային** խաղ: Կամ՝ որքան էլ երկարաճիտ լինի կոշիկը՝ **սապոգ** կդառնա՞:

Հիմա շատ հաճախ **տուրիստ**-ի փոխարեն գրում են **զբոսաշրջիկ:** Նախ՝ հայերեն բառը շատ երկար է, չի ենթարկվում լեզվի այն օրենքին, որ կոչվում է «տնտեսման օրենք», ըստ որի լեզուն նախապատվությունը տալիս է կարճ բառին: Այնուհետև. **զբոսաշրջիկը** միանգամայն անբարեհնչուն է թեքումների մեջ՝ **տուրիստական ուղևորություն-զբոսաշրջիկայի՞ն ուղևորություն, տուրիզմի զարգացում-զբոսաշրջիկությա՞ն զարգացում...** տեսնու՞մ եք, որ չի լինում:

Քննության առնենք ևս մի օրինակ: Ֆրանսերենից եկած **գաստրոլ** բառի փոխարեն գործ է ածվում **հյուրախաղ** բառը: Թվում է շատ լավ: Իրոք, կարող ենք գրել՝ **այսինչ թատրոնը հյուրախաղերով հանդես կգա Երևանում:** Իսկ եթե խոսքը վերաբերում է ոչ թե թատրոնին, այլ երգչի, ջութակահարի, երաժշտական կամ պարային անսամբլի՞: Հո չենք կարող սրանց էլ **հյուրանվագ** կամ **հյուրապար** կոչել: Ուրեմն, **հյուրախաղ** բառը կարող է գործածվել մասնավոր դեպքի համար, իսկ **գաստրոլ** կոկիկ և հայերեն թեքումներին դյուրությամբ ենթարկվող բառը պետք է պահպանել առանց նեղվելու: Դերենիկ Դեմիրճյանը պատվիրում էր «Չմոռանալ, որ ինչ արդեն յուրացված է՝ որ կողմից ուզում է մտած լինի լեզվի մեջ՝ **հայերեն է»:** Եվ դրա մեջ աղետալի ոչինչ չկա: Աղետալին ոչ թե դա է, այլ այն, երբ ամենահասարակ, ամենասովորական, ամենահայտնի հայերեն բառերն են բնակչության մեջ կորցնում իրենց համն ու հրապույրը՝ **մոռը** դառնում է **մալինա, իրերը՝ վեշչեր, հյութը՝ սոկ, խոզը՝ յազվա** և այլն: Ի՞նչն է ստիպում **հյութ** այնքան հյութալի բառը փոխարինել **սոկ**-ով: Մի կողմից գլուխ ենք կոտրում օտարամուտ բառը մի կերպ թարգմանելու համար, մյուս կողմից, խոսակցական լեզվում հատկապես, երես ենք դարձնում դարեր ի վեր գոյություն ունեցող, սքանչելիորեն պարզ ու գեղեցիկ հայոց բառերից:

Այստեղ է, ահա, որ Մարինե Բակունցը և մեր մյուս թղթակիցներն իրավացի են հազարապատիկ: Ինչ վերաբերում է Մարինեի այն կարծիքին, թե **լրագրող** բառը կատարելապես կարող է փոխարինել **ժուռնալիստ**-ին, ապա այստեղ ես ուզում եմ համաձայնել նրա հետ, մեջբերելով մայրենի լեզվի արթուն պահապաններից մեկի՝ Ռաֆայել Իշխանյանի այն վկայությունը, թե ֆրանսիացի մի հայագետի կարծիքով **«ժուռնալիստ** ֆրանսերեն բառը նեղ է իմաստով, քանի որ միայն ժուռնալի (ամսագրի) հետ է առնչվում, մինչդեռ **լրագրող**-ը **լուր** բառի հետ է առնչվում և շատ ավելի լայն իմաստ է պարունակում»:

Ի՞նչ եզրակացություն այս զրույցից. մեկ, որ օտար բառերի գործածության սահմանը ոչ ոք նախապես որոշել չի կարող, դա լեզվի զարգացման կենդանի ընթացքն է որոշում: Եվ ապա՝ լեզվի ասպարեզում մաքրամոլությունը նույնքան անցանկալի է, որքան օտարամուտ բառերի առաջ դռները կրնկի վրա բացելը, մի դեպքում լեզուն լցվում է արհեստական, անմատչելի ու անգործածելի բառերով, մյուս դեպքում՝ անհարկավոր ու անհարկի օտարաբանություններով:

# ԿԱԽԱՐԴՎԱԾ ՎԵՐԱՆ

ԱԼԵՔՍԵՅ ՍՄԻՐՆՈՎ



Կա ու չկա, չկա ու կա,
Մոսկվայում մի լավ շենք կա,
Այդ շենքում է ապրում Վերան,
Եվ այդ շենքում
Թե ընկերներ, թե հարևան,
Տնով, տեղով, մեծ ու պուճուր
Նրա մասին են քչփչում.
«Կախարդվա՛ծ է, ո՞վ է տեսնես
Խեղճ աղջկան պատժել այդպես:
Ոչ մի անգամ չի վազում բակ,
Ոչ խաղում է, ոչ էլ երգում,
Ի՛նչ պատիժ է, ի՛նչ կախարդանք,
Չկա՞ խեղճին ոչ մի պրծում:
Աչք չի կտրում հեռացույցից,
Թե ուտելիս, թե խմելիս,
Նույնիսկ, երբ որ չի ցանկանում,
Նույնիսկ, երբ որ քունն է տանում,
Բայց չարությամբ, համառությամբ
Նայում է նա,
Նայում,
Նայո՛ւմ:
Ո՞նց չնայի,
Կինոնկար է մեծերի,
Սա՝ փոքրերի,
Իսկ սա՝ բալետ,
Իսկ սա՝ հոկեյ,
Իսկ սա՝ համերգ էստրադային,
Ո՞նց չնայի:
Մինչ ծրագիրն է վերջանում,
Թմրում է ու ապուշանում,
Իսկ առավոտն էլի նորից
Պոկ չի գալիս նա էկրանից...

Եվ հաճախ են նրան ասում.
— Խաղա մի քիչ...
— Չէ՛, չեմ ուզում...
— Լավ, նկարիր..
— Չէ՛, չեմ կարող...
— Կարդա գոնե...
—Էէէէ՛, չգիտեմ,
Համ էլ գնա, մի խանգարիր,
Հեռացույցը քանի որ կա,
Ինչի՞ս են պետք գիրք ու նկար:
Պիտի նայեմ, նայեմ այնքան,
Մինչև կարգին խելոքանամ:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Դե, ասացեք, բարեկամներ,
Թե կախարդված նա չլիներ,
Այդպիսի բան կասե՞ր,
Կանե՞ր...
Ո՞վ կախարդեց այդպես նրան,
Որ չի թողնում մի քիչ խաղալ,
Մի քիչ կարդալ կամ... փռշտալ...
Որ մի վարկյան աչքերն հանգած
Չի թողնում որ
Նա էկրանից իջեցնի ցած...



ՌԱՖԻԿ ՆԱՀԱՊԵՏՅԱՆ

# ՄԻ ԲԱՐԻ ԱՌՅՈՒԾ, ՈՐ ՄՌՆՉԱԼ ՉԳԻՏԵՐ

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



Վաղո՜ւց, շա՜տ վաղուց մի առյուծ կար, որ բարի սիրտ ուներ, բարի աչքեր և բարի ձայն: Նա այնքան բարի էր ու քաղաքավարի, որ երբ որս էր բռնում (իսկ դա պետք է աներ, քանի որ նա էլ էր ուտել ուզում), հանկարծ որտեղից որտեղ հայտնվում էին այլ գազաններ ու նրան մի կողմ հրրում.

— Դու սպասիր,— ասում էին նրանք,— չէ որ դու գազանների արքան ես: Մենք քո խեղճ հպատակներն ենք՝ միթե՞ վայել է ուժեղին չմտածել թույլերի մասին:

Առյուծը ամոթից կարմրում էր: Կարմրում էր գորշավուն մռութը, նարնջագույն բաշը, մեղրագույն մորթը և նույնիսկ պոչը:

— Խնդրեմ, անուշ արեք,— ասում էր նա է՛լ ավելի կարմրելով ու մի կողմ էր

քաշվում,— միայն խնդրում եմ չմոռանաք որևէ բան էլ ինձ թողնել:

— Իհարկե կթողնենք,— ասում էին գազանները և վրա պրծնում որսին:

— Ամենահամով պատառները քեզ համար ենք պահելու,— ասում էին ու խժռում ամբողջ որսը:

— Իսկ ո՞ւր է իմ բաժինը,— զարմանում էր առյուծը, երբ մոտենում ու տեսնում էր, որ ոչինչ չի մնացել,— չէ որ դուք ինձ ամենահամով պատառները խոստացաք:

— Մենք փնտրեցինք,— իբր թե ողբում էին գազանները,— մենք ջանք չխնայեցինք, բայց որսի մեջ համով ոչինչ չկար: Ոչ մի կտոր, ոչ մի պատառ: Լրիվ անպետքություն էր:

— Բայց այդպես անխր չի լինում,— վիրավորվում էր առյուծը,— դուք ճիշտ չեք ասում:

— Վա՜յ մեզ,— թաթերով գլուխներին էին տալիս գազանները,— վա՜յ մեր օրին, արքան չի հավատում իր հպատակներին՝ հիմա ինչ կմտածեն մեր մասին սողուններն ու թռչունները,— ու նրանք հանդիմանանքով առյուծին էին նայում:

— Ո՛չ, ո՛չ,— նորից կարմրում էր բարի առյուծը,— ո՛չ, ո՛չ, ես ձեզ հավատում եմ, խնդրեմ մի վիրավորվեք, բայց եթե որսս լրիվ անպետքություն էր՝ դուք այդ ինչպե՞ս ամբողջը կերաք:

— Մենք հեչ, մեզ կարելի է,— անտարբեր ասում էին գազանները,— մենք արքա չենք: Մենք ի՞նչ ենք որ,— ու գազանները պոչները իրենց քաշած հեռանում էին, իսկ բարի առյուծը սոված էր մնում:

Այսպիսի բաներ նրա հետ շատ անգամ էին պատահում և բարի առյուծը, չնայած գիտեր, որ իրեն անգթորեն խաբում են, չէր կարողանում ոչինչ անել:

— Չգիտեմ ինչպես վարվել այդ խաբեբաների հետ,— բողոքում էր նա իր ամենամոտիկ բարեկամներին՝ Սիկոլո կապիկին և Տանիկա թութակին,— ինչպե՞ս պատժեմ նրանց:

— Այդ ամենը նրանից է, որ դու շատ բարի ես,— ասում էր Սիկոլո կապիկը:

— Եվ շատ քաղաքավարի,— ավելացնում Տանիկա թութակը:

— Լավ,— բարկանում էր բարի առյուծը,— վաղը ես նրանց հախից կգամ, վաղը ես բարի չեմ լինի:

Եվ այդ որոշումից ուրախացած նա սկսում էր խաղալ իր բարեկամների՝ Սիկոլո կապիկի և Տանիկա թութակի հետ: Նրանք այնքան ուրախ, այնքան զվարճալի խաղեր էին խաղում, որ բարի առյուծը մոռանում էր քաղցը, քանի որ աշխարհում ամենալավ բանը ընկերությունն ու բարեկամությունն է ու դրա կարիքն ես միայն շատ զգում:

Բայց մյուս օրը, երբ բարի առյուծը տխուր-տրտում նրանց մոտ էր գալիս՝ Սիկոլո կապիկը ամեն ինչ հասկանում էր ու բղավում.

— Դու դարձյալ բարի ես եղել:

— Այո,— պատասխանում էր բարի առյուծն ու գլուխը կախում:

— Եվ քաղաքավարի,— ավելացնում էր Տանիկա թութակը:

— Այո՛,— կրկին պատասխանում էր բարի առյուծը և էլ ավելի էր կախում գլուխը:

— Այսպես շարունակել անհնարին է,— միաձայն բղավում էին Սիկոլո կապիկը և Տանիկա թութակը,— պետք է մի բան մտածել:

Բայց երբ տեսնում էին, որ բարի առյուծը շատ է տխուր, սկսում էին նրա հետ խաղալ և բարի առյուծը ամեն ինչ մոռանում էր, քանի որ եթե քեզ հետ են ընկերները, տխուր չես լինի և կմոռանաս քաղցը:

— Այնուամենայնիվ մի բան պետք է մտածել,— ասում էին բարի առյուծի ընկերները, երբ մյուս օրը նա որսի էր գնում,— մենք պարտավոր ենք օգնել մեր ընկերոջը:

Տանիկան անտառի ամենածեր թութակից իմացավ, որ հեռու-հեռվում մի անապատ կա և այդ անապատում մի բլրակի մոտ ապրում է Բեն իմաստուն ջայլամը:

— Նա ամեն ինչ գիտի,— ասաց անտառի ամենածեր թութակը,— և սիրում է օգնել դժբախտության մեջ ընկածներին:

— Դու կգնաս Բեն իմաստուն ջայլամի մոտ ու նա կօգնի քեզ,— ուրախ-ուրախ, ծափ զարկելով բղավեցին ընկերները:

Առավոտյան բարի առյուծը ճանապարհ ընկնելուց առաջ հրաժեշտ տվեց իր ընկերներին և ասաց.

— Սիրելի բարեկամներ, մի տխրեք առանց ինձ, ես շուտով կվերադառնամ ու մենք առաջվանից ավելի երջանիկ կապրենք:

— Եվ միշտ իրար հետ կլինենք,— բացականչեց Սիկոլո կապիկը:

— Միշտ և ամենուր,— ավելացրեց Տանիկա թութակը:

Եվ բարի առյուծը ճանապարհ ընկավ: Երկար, շատ երկար քայլեց և երբ նա իրեն հանդիպած կենդանիներին հարցնում էր հեռու-հեռավոր անապատի տեղը՝ բոլորն էլ սիրով էին պատասխանում, որովհետև նա շատ բարի էր ու քաղաքավարի: Վերջապես բարի առյուծը հասավ հեռու-հեռավոր անապատին, գտավ բլրակը և Բեն իմաստուն ջայլամին պատմեց իր գլխին եկածը:

— Քեզ հարկավոր է մռնչալ սովորել,— ասաց Բեն իմաստուն ջայլամը:

— Իսկ ինչպե՞ս սովորեմ մռնչալ,— հարցրեց բարի առյուծը,— ես ախր չգիտեմ:

— Դա դժվար բան չէ,— ասաց ջայլամը,— միայն թե մտածում եմ, հարկավո՞ր է արդյոք քեզ այդ:

— Հարկավոր է,— ասաց բարի առյուծը,— խնդրում եմ, չէ որ դուք օգնում եք փորձանքի մեջ ընկածներին:

— Լավ,— համաձայնեց Բեն իմաստուն ջայլամը:— Արևամուտից քիչ առաջ, երբ անապատի ավազը դեղին-դեղին կլինի, ավելի ճիշտ՝ մեղրագույն կդառնա, ինչպես քո մորթը, և արևը շիկացած, կաս-կարմիր մի գնդի կընմանվի, և օդը թափանցիկ կլինի ու ջինջ, և ստվերները ուղիղ ու անսահման կերկարեն, ու ավելի կընդգծվեն ավազաթմբերն ու ակոսները, և ողջ անապատը կնմանվի քարացած ծովի...,— Բեն իմաստուն ջայլամը սիրում էր գեղեցիկ խոսել...

— Հետո՞, հետո՞,— անհամբեր հարցրեց բարի առյուծը,— և ողջ անապատը կնմանվի քարացած ծովի, հետո՞...

— Դու կկանգնես ետևի աջ թաթիդ վրա, արագ կպտտվես ինքդ քո շուրջը և կասես կախարդական բառերը:

— Ո՞րոնք են այդ բառերը,— հուզմունքից շնչակտուր հարցրեց բարի առյուծը:

— Ես իհարկե կասեմ քեզ այդ բառերը, բայց չգիտեմ արժե՞...

— Արժե, արժե,— ասաց բարի առյուծը,— խնդրում եմ:

— Դե լավ,— խղճաց նրան Բեն իմաստուն ջայլամը,— ուրեմն կկանգնես ետևի աջ թաթիդ վրա, արագ կպտտվես ինքդ քո շուրջը և կասես՝ կա-տար-վի՛ր:

— Կա-տար-վի՛ր,— կրկնեց բարի առյուծը,— ինչ սքանչելի կախարդական բառեր են,— նա արագ նայեց արևին,— օ՜,— ասաց նա ափսոսանքով,— մինչև արևամուտը դեռ երևի մի երկու ժամ կա, իսկ ես շտապում եմ, ախր, ընկերներս ինձ են սպասում:

— Երբեք պետք չէ շտապել,— ասաց

Բեն իմաստուն ջայլամը ու գլուխը ավազի մեջ խրեց՝ հասկացնելով, որ ընդունելությունն ավարտված է:

— Շնորհակալ եմ,— բացականչեց բարի առյուծը,— անչափ շնորհակալ եմ, Բեն:

Նա երկար թափառեց անապատում, մինչև որ սկսվեց արևամուտը: Ու ահա, երբ անապատի ավազը մեղրագույն դարձավ, և արևը շիկացած, կաս-կարմիր մի գունդ, և օդը թափանցիկ ու ջինջ եղավ, և ստվերներն ուղիղ ու անսահման երկարեցին, ու ավելի ընդգծվեցին ավազաթմբերն ու ակոսները, և ողջ անապատը նմանվեց քարացած ծովի, ահա երբ կատարվեց այս ամենը, բարի առյուծը կանգնեց ետևի աջ թաթի վրա, արագ պտտվեց ու ասաց այն սքանչելի կախարդական բառը.

— Կա-տար-վի՜ր,— բղավեց նա ու նրա զրնգուն ձայնը տարածվեց ողջ անապատով մեկ:

Ահա և վերջ: Պատմելու առանձնապես բան չմնաց: Բարի առյուծը, որ հիմա արդեն ամենևին էլ բարի չէր, և աչքերն էլ բարի չէին, և ձայնն էլ բարի չէր, քանի որ այժմ նա միայն մռնչում էր՝ դարձավ սովորական մի առյուծ: Նա այժմ տիրականորեն քայլում էր և երբ որևէ որս էր բռնում, ոչ ոք չէր համարձակվում նրան մոտենալ, ոչ ոք նրան մի կողմ չէր հրում, և ոչ ոք չէր ծիծաղում նրա վրա: Միայն վատն այն էր, որ հիմա նա մենակ էր, բոլորովին մենակ: Ու միայն երբեմն, արևամուտից առաջ, երբ նա հիշում էր իր ընկերներին, կանգնում էր ետևի աջ թաթի վրա, պտտվում հակառակ ուղղությամբ և բղավում՝ կա-տար-վի՛ր, ու ցանկանում էր նորից դառնալ հին, բարի, քաղաքավարի առյուծը, խաղալ ընկերների հետ: Բայց ոչինչ չէր փոխվում, որովհետև կյանքում հրաշք միայն մեկ անգամ է կատարվում և պետք է այն ճիշտ օգտագործել:







# ԵՏ՝ ԴԵՊԻ ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶ

Ծտապում ես մեծանալ և ահա գնում ես մանկապարտեզ՝ խաղալիքների ու հեքիաթների գույնզգույն աշխարհը: Եվ էլի ես շտապում մեծանալ, գնում ես դպրոց ու հիմա էլ սկսում ես կարոտել հեքիաթների ու խաղալիքների աշխարհը: Ավարտում ես դպրոցը. այս անգամ էլ կարոտում ես դպրոցը, ուսուցիչներին, զանգի ձայնին և նույնիսկ ուսման հետ կապված դժվարություններին:

Հետադարձ այս կապը միշտ էլ շարունակվելու է մեր ամբողջ կյանքում: Նույնանման մի զգացում էր, որ Ստեփան Շահումյանի անվան դպրոցի Վաղենտին Կոտիկի անվան ջոկատի պիոներներին տարավ դեպի ետ՝ մանկապարտեզ: Դպրոցում արդեն բավականին հասունացած, բազմաթիվ գրքեր կարդացած, նվագել, երգել, արտասանել իմացող պիոներները իրենց կրտսեր քույրերի ու եղբայրների համար սկսեցին հետաքրքիր խաղեր կազմակերպել, բեմադրել զանազան հեքիաթներ: Երեխաներին հատկապես դուր եկավ նրանց բեմադրած «Մոխրոտիկն» ու «Կարմիր գլխարկը», իսկ մայրիկների տոնին և այլ տոների նվիրված պատկերազարդ պատի թերթերի բանաստեղծությունները երեխաները անգիր գիտեն՝ պիոներներն են սովորեցրել: Մանկապարտեզի անցյալ տարվա ավարտական հանդեսը, որ ծնողներին ու դաստիարակչուհիներին այնքան շատ դուր եկավ՝ դեռահաս դաստիարակչուհիներն էին կազմակերպել:

— Հաճելի է, երբ երեխան սովորեցրածդ բա-



նաստեղծությունը արտասանում է անսխալ, սովորեցրածդ երգը երգում իր անուշ ձայնով, պարում իմացածդ պարերը,— ասում է ջոկխորհրդի նախագահը՝ Լիանան:

Գոհ են մանկապարտեզի և՛ դաստիարակչուհիները, և՛ դայակները, և՛ ծնողները, և, իհարկե, երեխաները, իսկ երևի ամենից շատ՝ պիոներները: Մի խոսքով, լավ գործից շահում են բոլորը:

Վալենտին Կոտիկի անվան ջոկատում շնորհալի շատ պիոներներ կան և նրանց շնորհիվ է, որ ջոկատը հաճախ հաղթող է ճանաչվում զանազան մրցույթներում: Վերջերս դպրոցի դահլիճում «Ուրախների ու հնարամիտների» մրցույթ տեղի ունեցավ. ջոկատը երկու խմբի բաժանվել ու մրցում էր... ինքն իր հետ: Մրցույթը լավ էր կազմակերպված: Թե ուսուցիչները, թե աշակերտները գոհ մնացին: Պիոներները նկարներով հարցեր էին տալիս միմյանց, երգում էին, պարում, նվագում, իսկ երբ Լիանան հանդես եկավ մնջախաղի հետաքրքիր մի համարի կատարմամբ, հենց դահլիճում էլ որոշվեց նրան այս տարի ուղարկել մասնակցելու համաքաղաքային օլիմպիադային:



# ՀԵՔԻԱԹԻ ՏՈՆ

Այնքան էլ շատ ժամանակ չի անցել, երբ Նվարդը, Հասմիկը, Գառնիկը, Վարդուհին, Տիգրանը... մի խոսքով Ստեփան Շահումյանի անվան դպրոցի՝ գեներալ-մայոր Հայկ Մարտիրոսյանի անվան ջոկատը ճանաչվեց հանրապետությունում:

Ահա թե այդ ինչպես սկսվեց: Ջոկատային ժողովներից մեկի ժամանակ պիոներները որոշեցին հեքիաթի տոն կազմակերպել: Դիմեցին հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Թերեզա Մկրտչյանին, և նա իր սաներին ուրախությամբ ընդառաջեց: Ստեղծեցին մի պիես, որտեղ հնարավորություն ունեցան մասնակցելու բազմաթիվ հեքիաթների ճանաչված հերոսներ: Ծանոթ հեքիաթները պիեսում նոր լուծում էին ստացել: Հերոսները, որ մեծ մասամբ Հովհաննես Թումանյանի ստեղծագործություններից էին հյուր եկել, գտնում էին իրենց հարցերի բոլոր պատասխանները. չարերը բարիանում էին, բարիները հասնում իրենց երազանքներին: Այսպես օրինակ. պիեսում Գիքորին ուս-

ման են տալիս, նա հետո ավարտում է ինստիտուտն ու ասպիրանտուրան: Գայլը պաշտպանում է Կարմիր գլխարկին: Գառնիկ Ախպերը երբ ծարավում է, ջուր չի խմում կճղակի փոսիկից, նրան ջուր է տալիս Անահիտ թագուհին: Եվ բոլոր այս հերոսները Գյուլնազ տատի թոռներն են: Գյուլնազ տատն է նրանց հաշտեցնում, իսկ փորձանքի պահին՝ սատար է կանգնում:

Պիեսի փորձերին անգնահատելի օգնություն մատուցեց տիկնիկային թատրոնի դերասանուհի ընկեր Հայկուշը: Առաջին ելույթը դպրոցում էր, հետո՝ տիկնիկային թատրոնում: Այնուհետև մեծ հաջողությամբ պիոներները ելույթ ունեցան բուհերի ուսանողների առաջ, գրողների միության դահլիճում, կոմպոզիտորների տանը, գրքի տոնի առթիվ՝ հանրապետական մարզադաշտում և այլուր: Իսկ հեռուստատեսությամբ բեմադրությունը երկու անգամ կրկնվեց:

Այս և ուրիշ հաջողությունների համար ջոկատը ստացել է բազմաթիվ նվերներ ու պատվոգրեր:

Հայկ Մարտիրոսյանի անվան ջոկատը մինչև այժմ էլ անպարտելի է բոլոր տեսակի միջջոկատային մրցումներում, լինի սպորտային, ասմունքի, մետաղի ջարդոն, կամ թղթի թափոն հավաքելու, ուսման բարձր առաջադիմության և այլն, և այլն: Վերջերս ջոկատը երևանյան մետրոպոլիտենի շինարարներին նվիրեց 20 ձայնապնակ և 20 գիրք: Իսկ ամեն հինգշաբթի, դասերից հետո, № 65 մանկապարտեզում կարելի է տեսնել փոքրիկների դեռահաս դաստիարակչուհիներին՝ Հայկ Մարտիրոսյանի անվան ջոկատի պիոներներին: Ինչպես ամեն տեսակի նախաձեռնությունների ժամանակ, նրանք այս անգամ էլ մեծ սիրով ու նվիրվածությամբ ձեռնամուխ են եղել «Մանկիկ» օպերացիային:



# ԸՆԿԵՐ ՔՆԱՐԻԿԸ

Ընկեր Քնարիկը Ստեփան Շահումյանի անվան դպրոցի 6-րդ Բ դասարանի ջոկատի ջոկատավարն է: Աշխատում է «Մանկական աշխարհ» կենտրոնական հանրախանութում, շատ է զբաղված, սակայն շաբաթվա մեջ երկու-երեք անգամ ժամանակ է գտնում դասարանում լինելու, հե-

տևում է ուսման առաջադիմությանը, մասնակցում դասալսումներին, հաճախ կազմակերպում հետաքրքիր էքսկուրսիաներ: Ջոկատում բոլորն էլ գիտեն, որ ընկեր Քնարիկը օրագիր է պահում, ուր նշվում են ջոկատի կատարած բոլոր արժանի աշխատանքներն ու ընկատված թերությունները: Պիոներներն ինչ-որ տեղ էլ հանուն իրենց ջոկատավարի են աշխատում օրինակելի վարք ունենալ և բարձր առաջադիմություն ցուցաբերել: Ո՞վ կցանկանա, որ իր պատճառով ընկեր Քնարիկի օրագրի էջերից մեկում տխուր բաներ գրվի:

Վերջերս ջոկատը ընկեր Քնարիկի ղեկավարությամբ սկսել է համերգներով հանդես գալ աշխատավորների առաջ՝ նրանց ընդմիջման ժամերին:

— Արտադրությունից եկած լավ ջոկատավարների կարիք դպրոցը միշտ էլ ունի,— ասում է ավագ ջոկատավար Սիլվա Մարկոսյանը,— և ջոկատների համար բարեբախտություն կլինի, երբ ունենան ընկեր Քնարիկի նման ջանասեր ու հոգատար ջոկատավարներ:

Ն. ՈՍԿԱՆՅԱՆ

# ՀՈՒՇԱՐՁԱՆ ՊԱՊԻՆ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

Թոռը բակում, հին փռան մոտ
Քարտաշ պապի մուրճն է գտել,
Պապի համար, պապի մուրճով
Հուշարձան է ուզում սարքել:
Հո չի շինում արկ ու ական,
Հո չի շինում ուրիշ վատ բան,
Բակում կա մի ժայռաբեկոր,
Պատվանդան է դա իսկական:
Չի ունենա քուն ու անդորր,
Եվ հուշարձանը քարակերտ
Կբարձրանա բակում մի օր:
Ով տեսել է պապին նրա,
Կզարմանա, կհառաչի.
— Այսքան նման, Լևոնն ահա,
Ինքն է, որ կա, աղջի՜, աղջի՜:
Լևոն ուստան եկել է ու
Կանգնել մեջտեղն իրենց բակի:

# ԿԵՆԴԱՆԻՆԵՐՆ



## ԱԿՆՈՑԱՎՈՐԸ



Մանր մարտերով մենք առաջ էինք շարժվում դեպի արևմուտք: Ռուդոմից ոչ հեռու մեր գումարտակը մի քանի օրով կանգ առավ եկեղեցու պուրակում, որը չորս կողմից շրջափակված էր աղյուսե պարսպով: Բացի եկեղեցուց, այստեղ կային և մի քանի տնակներ, ուր ապրել էին եկեղեցու սպասավորները: Ճակատի գծի մոտենալու պատճառով տնակների բնակիչները էվակուացվել էին, իրենց հետ տանելով եղած-չեղածն ու ընտանի կենդանիներին: Տեղափոխման ժամանակ մոռացված մնացել էր միայն մի սպիտակ հորթուկ, որի աչքերի շուրջը շիկավուն օղակներ կային՝ ասես ակնոց լիներ: Զինվորներն անմիջապես նրան Ակնոցավոր կոչեցին:

Ակնոցավորն ազատ շրջում էր մեր

## ԱՌԱՋԱԴՐԱՆՔԸ ԱՆՍՈՎՈՐ ԷՐ



Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

Երեսունվեց տարի առաջ Կարմիր հրապարակում կայացավ Հաղթանակի շքերթը: Շարասյուներից մեկում անցնում էին զինվոր-շնապահները, իրենց մարտական օգնականների՝ շների հետ: Նման պատվի նրանք արժանացել էին ռազմաճակատում կատարած մարտական սխրանքների համար: Մի քանիսի մասին էլ ուզում եմ պատմել:

Սակրավորների գումարտակներից մեկում մի խումբ շների առանձնացրին թշնամու թիկունքում դիվերսիոն գործողությունների նախապատրաստելու համար:

Անցավ մեկուկես ամիս, և խումբը չորս շներով ուղարկվեց թշնամու թիկունք:

Առաջադրանքն անսովոր էր. պետք է պայթեցնեին երկաթուղային գծերը:

շուրջն ու կանաչ խոտ անուշ անում։

Իմանալով, որ պուրակում երկար չենք մնալու, մենք խրամատների փոխարեն, փոքր փոսեր փորեցինք։ Ինձ համար վաշտի հրամանատար, գվարդիայի լեյտենանտ Գորդիենկոյի կողքին փոս փորեցի և ես։ Մեր փոսերը խորը չէին, հազիվ մինչև գոտկատեղ էին հասնում։

Առաջին իսկ օրը, արևամուտից առաջ, ես ու Գորդիենկոն նստել էինք նրա փոսի եզրին և ոտքերներս կախ գցած ուրախ ծիծաղում էինք. հրամանատարը ծիծաղաշարժ դեպքեր էր պատմում։ Ծուրջը լռություն էր։ Ոչ մենք էինք կրակում, ոչ էլ գերմանացիները։

Մեկ էլ լռությունը թրատվեց սահմռկեցուցիչ ճիչով։ Գերմանական ականանետն էր։ Ու անմիջապես էլ գերմանական խրամատներից թնդացին հրետանազարկերը։ Գորդիենկոն ակնթարթորեն թռավ իր փոսի մեջ, իսկ ես նետվեցի դեպի իմը։ Բայց այն արդեն զբաղեցրել էր... Ակնոցավորը ու ինձ էլ տեղ չէր մնացել։ Ինչպես ամեն կենդանի էակ, հորթուկը փախչում էր մահից։ Արկերն արդեն պայթում էին, երբ ես ինձ գցեցի գումարտակի հրամանատարի փոսը, հենց նրա վրա։ Այդպես իրար վրա ընկած մնացինք մինչև հրետանային գրոհի ավարտը։ Իսկ հետո ես, Գորդիենկոն և էլի ուրիշ երկու զինվոր փորձում էինք փոսից հանել Ակնոցավորին։ Նա վախից ամբողջ մարմնով դողում էր։

Երբ հաջորդ օրը նույն բանը կրկնվեց և հորթուկը նորից իմ փոսում հայտնըվեց, ես ինձ համար նոր փոս փորեցի։

*Ի. ԱՊԱՆՈՎԻՉ*

# ՈՒ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Հասան երկաթգծին, տեսան որ մոտենալը շատ դժվար է։ Գծի երկայնքով ֆաշիստները կտրել էին բոլոր ծառերն ու թփերը, ականապատել էին մատույցները, իսկ անցուղիները պատել փշալարերով։ Յուրաքանչյուր երկու հարյուր մետրի վրա աշտարակներին կանգնած էին ժամապահները, իսկ նրանց միջև շրջում էին շներով պոլիցայները։

Ու հասավ չորքոտանի օգնականների հերթը։ Նախ ուղարկեցին Ջեկին։ Պայթուցիկ նյութի հակով նա մոտ վազեց երկաթգծին, բայց վախեցավ մոտեցող գնացքից։ Այդ օրն այդպես էլ ոչինչ չստացվեց։

Հաջորդ օրը առաջադրանքի գնաց եֆրեյտոր Ֆիլատովը, Դինա շան հետ։ Ահա նրանք դարան են մտել։ Ծրջադարձում երևաց գնացքը։ Լսվեց հրամանը. «Դինա, առա՛ջ»։ Պայթուցիկ բեռը մեջքին, շունը մոտիկ վազեց գծերին։ Եվ հանկարծ... մոտ հարյուր մետրի վրա երևաց գերմանական պարեկը։ Դինան անմիջապես սեղմվեց գետնին։ Բարեբախտաբար ամեն ինչ բարեհաջող ավարտվեց։ Պարեկը ոչինչ չնկատելով հեռացավ և շունը վեր կենալով նետվեց առաջ։ Ահա և գնացքը։ Դինան շուռ եկավ, նայեց գնացքին և ատամներով քաշեց հակի բռնակը։ Այն արձակվեց և ընկավ ռելսերի մեջտեղը։ Քիչ անց լսվեց հզոր պայթյուն։ Հոց բռնկվեց, վագոնները մեկը մյուսի վրա կիտվեցին։

Շների օգնությամբ մեր զինվորները հակառակորդի շատ ու շատ ռազմական տեխնիկա ոչնչացրին։ Ահա թե ինչու Հաղթանակի շքերթին մասնակցեցին և զինվորների չորքոտանի օգնականները։

*Մ. ՌԻՎՉՈՒՆ*

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

# ԽՐԱՏԸ

(ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ)

— Հայր Աղափոն, ո՞րն է լավ,
Փարթամ մարմի՞ն ունենալ,
Թե՞ մտքեր հավաք։

— Կյանքը ծառի է նման,
Մարմինը ճյուղ է վրան,
Միտքը՝ պտուղ թանկ։

Նրա համար է ճյուղը,
Որ զորանա պտուղը։
Ոչ թե հակառակ։

# ՕՐՈՐՈՑԱՅԻՆ

(ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ)

Լորիս տարանք անտառը,
Լորիկ ջան,
Մաղկեցին թուփ ու ծառը,
Ջանե-ջա՜ն։

Խոտը եղավ քեզ ներքնակ,
Թուփը՝ բարձ,
Լայն տերևը քեզ վերմակ,
Դե մի՜ լաց։

Քնիր, քնիր լորիկ ջան,
Լորիկ ջան,
Երգեց առուն քչքչան,
Ջանե-ջա՜ն։

Քամին կգա կօրորի
Լորիկիս,
Միտը երազ կբերի
Լորիկիս։

Քնիր, քնիր լորիկ ջան,
Լորիկ ջան,
Կերգի առուն քչքչան,
Ջանե-ջա՜ն։

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ԱԼԻԽԱՆ ՄՈՒՍՈՅԱՆ







# ԵՐԳԸ ՄԱՐԴԿԱՆՑ ՀԱՄԱՐ



Սրտերի մեջ մեկիկ-մեկիկ
զանգ եմ կախում.
— Դինգ-դոնգ, դինգ-դոնգ, —
և դնում եմ ժամացույցներ.
— Թիկ-թակ, թիկ-թակ...

Տարածության չորս կողմերում,
անցյալի մեջ,
ներկայի ու ապագայի,
նրանք շատ հին երգ են երգում,
նրանք շատ նոր երգ են երգում
համահնչուն մեկը մեկին.
— Դինգ-դոնգ, դինգ-դոնգ,
Թիկ-թակ, թիկ-թակ...

Սրտերի մեջ մեկիկ-մեկիկ
զանգ եմ կախում
և դնում եմ ժամացույցներ.
— Դինգ-դոնգ, դինգ-դոնգ,
Թիկ-թակ, թիկ-թակ...
Ու թող երգեն բոլոր մարդիկ,
ու թող երգեն մեծ ու փոքրիկ
Ժամանակին... ու միասին...

Երբ որ քայլեմ անապատով
Անծառ-անջուր ու անկենդան,
Թող օազիս մարդկանց համար
Սիրտս դառնա:

Երբ տխրության ժամը իջնի,
Ուրախ, քնքուշ ու ոսկելար,
Թող որ տավիղ մարդկանց համար
Սիրտս դառնա:

Երբ գարունը բացվի նորեն,
Սարի փեշին ձյունը հալվի,
Թող ձնծաղիկ մարդկանց համար
Սիրտս դառնա:

Երբ գիշերվա մթության մեջ
Պաղ լուսինը չփայլփլի,
Թող փոքրիկ ջահ մարդկանց համար
Սիրտս դառնա:

Երբ ձմեռ գա ու ծածկի մեզ
Ու փոթորիկն անվերջ սուլի,
Թող վառ օջախ մարդկանց համար
Սիրտս դառնա:







Անցյալ տոյեմբերի վերջերին Հայաստանում հյուր էր ամերիկահայ անգլիագիր գրող, պատմաբան, Կոլումբիայի համալսարանի պրոֆեսոր ՄԱՐՋՐԻ ՀՈՎՍԵՓՅԱՆԸ: Նա մասնակցեց սփյուռքահայության ներկայացուցիչների ժողովին և Սովետական Հայաստանի վաթսունամյակի տոնակատարություններին: Եղավ նաև մեր ամսագրի խմբագրությունում: Ստորև տպագրում ենք մի հատված նրա «Սիրառատ տունը» անգլերեն վեպից, որը մեծ համբավ բերեց հեղինակին:

# Բյուզանդ

ԵԹԵ 1920 թվականի վաղ գարնանը դուք քայլեիք Նյու-Յորք քաղաքի 24-րդ փողոցով դեպի արևելք, անցնեիք բլիթավաճառի կրպակի, ապա Զոմուրոյի ճապոնական ապրանքների խանութի մոտով, որի ցուցափեղկում մի ծաղկաման էր դըրված, և վերջապես անցնեիք սիրիական սրճարանը, որի առջև, մայթի վրա, մինչև հետմիջօրեի ժամը հինգը կիպ շարված էին լինում մետաղյա սեղաններ, կտեսնեիք հորս՝ բժշկական ցուցատախտակ կպցրած մեր տան առաջին հարկի լուսամուտի առաջ: Իսկ մեր տան ճիշտ դիմացին գտնվող շենքի պատուհանից կախված կտեսնեիք մի գեր կնոջ, որ մեկ-մեկ բղավում էր իր որդուն. «Վիկ-տո՜ր, Վիկ-տո՜ր, հեռու մի գնա, տեսադաշտիցս չկորչես»:

Բյուզանդ քեռու ճաշարանը գտնվում էր Լեքսինգթոն պողոտայի վրա, ճիշտ անկյունում, մեր տնից մի քանի տնաշարք այն կողմ: Եթե դուք այնտեղ գընայիք հետմիջօրեին, Բյուզանդ քեռուն կգտնեիք խոհանոցում կանկար կեղևելիս և կամ իրիկվա համար գառ-




# քեռու ճաշարանը և Մարթա մայրիկը

նուկի միս ծեծելիս, միաժամանակ սըմբուկի գնի մասին քրթմնջալիս: Ամառն լվացող Սեդրակը մոտերքում դես ու դեն էր ընկնում, ջանալով զբաղված երևալ: Բյուզանդ քեռին գազազում էր, երբ տեսնում էր, որ ինքը աշխատում է, իսկ ուրիշները ծույլ-ծույլ թրև են գալիս: Սեդրակը գիտեր այդ բանը, ուստի աշխատում էր բարկանալու առիթ չտալ: Նրան հաջողվել էր սոխը կըտրատելու գործը դարձնել դժվարին, անհաղթահարելի մի պարտականություն, որը նա գլուխ էր բերում իբրև թե հնարամտությամբ և գերմարդկային եռանդով:

Բյուզանդ քեռու կինը՝ Հաճին, այդ ժամին սեղանները էր հարդարում: Սեղանների և աթոռների միջև սեղմըվելով անցնելիս դուք նրա կոշտ, թույլ շորերի տակից կնկատեիք մարմնի ճարպագնդերի շարժումը: Իսկ ամռանը, երբ նա վեր էր քաշում հագուստի թևերը, անմիջապես ձեր աչքին կզարներ նրա բազկի կապույտ, զարմանա-

լի նշանը, որը նրա Երուսաղեմ ուխտ գնացած և Հաճի դարձած լինելու վկայությունն էր: Եթե հաճախորդի տեսքը դուր գար Հաճիին, նրան կհրավիրեր ներս, խոհանոցի կողմը մի գողունի հայացք նետելով, որովհետև Բյուզանդը իր գործի նկատմամբ անարգանք էր համարում ոչ ընդունված ժամերին մարդկանց սպասարկելը:

— Ո՞վ կա այնտեղ,— գոռում էր նա և բնավ պետք չէր, թե դիմացինը հայերեն հասկանո՞ւմ է արդյոք:

—Հարգարժան տեսք ունեցող մի մարդ, Բյուզանդ,— բացատրում էր Հաճին:— Քաղցած է երևում: Այդ գառնուկի մսից մի շերտ տուր, հա՞: Տկարակազմ մի արարած է, փոքր ախորժակով:

Հաճախորդին Հաճին նստեցնում էր սեղաններից մեկի մոտ, խոհանոցից բավականին հեռու, ձեռքն էր տալիս ճաշացուցակը և սեղանների միջով ճանապարհ հարթելով ուղղվում էր խոհանոց: Երբ նա հեռանում էր, հաճախորդը նոր միայն գլխի էր ընկնում, որ ճաշացուցակը պարզապես ձևականություն է, որովհետև դա տպագրված էր լինում միայն հայերեն: Բյուզանդ քեռին գառնուկի եփած մսից շերտեր կտրատելով, դեռևս շարունակում էր բերանը ծածկող բեղերի միջով հայհոյանքներ մրթմրթալ, մինչ Հաճին ավելի փոքր մի ափսեի մեջ տեղավորում էր սառը լոբի, բազուկ, թփով դոլմա, համեմված միս ու փայլփլուն սև ձիթապտուղ, որպես աղաներ:

Բյուզանդ քեռին լավ տրամադրության պահերին Ամերիկա նոր ժամանած ազգականներին սիրում էր պատմել, որ բոլոր ամերիկացիները իրենք իրենց սովամահ են անում: Հապա մի տեսեք, թե ի՞նչ է նրանց կերածը: Գեբերը բլիթներ են ուտում: Բլիթներն էլ այնքան վատ են թխված, որ խեղճ արարածները ասես պլյուր են կուլ տալիս իրենց ախորժակը մարելու համար, եթե ախարժակ էր մնացած լինում... Ճաշը մատուցելուց հետո՝ Բյուզանդ քեռին կանգնում էր որոշ հեռավորության վրա և ուշադիր զննում հաճախորդին: Եթե պատահեր, որ հաճախորդը բավականին տխմար գտնվեր ու անխոհեմաբար ասեր, որ իր ամբողջ ուզածը մեկ հատ բուտերբրոդ է, նա, առանց այլևայլի, արագորեն դուրս էր արվում ճաշարանից, և նրա անփափկանկատության հետևանքները կրում էին խոհանոցի աշխատողները: Այդ ամբողջ օրը, և նույնիսկ հաջորդ օրը, հնարավոր չէր լինում խոսել Բյուզանդ քեռու հետ, և նրանից չլսել խոսքեր ապերախտ ամերիկացիների և նրանց բուտերբրոդների մասին:

Իսկ եթե հաճախորդը քիթը գնահատանքով վեր քաշեր, երբ ափսեն դըրվում էր առջևը, Բյուզանդ քեռին վերադառնում էր խոհանոց գոհ, իր սև, կատաղի բեղերի տակից ժպտալով:

Հենց այդպիսի մի հետմիջօրե էր, մարտ ամսին, երբ դպրոցից հետո ես ինձ գցեցի Բյուզանդ քեռու ճաշարանը, որը տեղավորված էր մեր տան ճանապարհին և շատ հարմար կայան էր մեղմելու համար քաղցս: Տարը տարեկան հասակում, ես տառապում էի ուտելու մշտական մարմաջով: Այդ օրը ինձ հետ էր իմ նոր բարեկամուհին՝ Կարոլին Կրուգը, մի վտիտ, կարճատես, ասես իրարից անջատված հոդերով աղջիկ, որը օրիորդ Էդիսոնի դըպրոցն էր եկել միայն այդ առավոտ: Երբ դպրոցում մենք բացեցինք մեր ճաշի զամբյուղները, զարմանալի պատահականությամբ նկատեցինք, որ ուտելիքների մեր ճաշակները համընկնում էին: Ես հաճույքով իմացա, որ ի թիվըս այլ բաների, Կարոլինը ինձ պես սիրում էր նաև ուտել: Նա սիրով համաձայնվեց դասերից հետո ինձ հետ գալ Բյուզանդ քեռու ճաշարանը:

Մենք նախ մտանք Գրեմըրսի պուրակին նայող Կարոլինենց տուն և մորն ասացինք, որ գնում ենք զբոսնելու: Երեքուկեսը անց էր, երբ ճաշարան հասանք: Անկյունում նստած էր մի փոքրամարմին, նիհար մարդ և գոհունակությամբ ուտում էր առջևը դրված ճաշը, որը բաղկացած էր գառնուկի եփած մսից, փլավից և տապակած սմբուկից: Խոհանոցից լսվում էին «Մարսելիոզի» հնչյունները. «Բ-Բո՛մ, Բ-Բո՛մ, Բո՛մ, Բո՛մ, Բո՛մ, Բուո՛մ, Բ-Բո՛մ»: Ես մտածեցի, որ ինչ-որ բան կարողացել է Բյուզանդ քեռուն լավ տրամադրություն պարգևել: Սեղանների արանքով գնացինք մառան, որտեղ չորացրած, աղ դրած ձկան և թթու կաղամբի հոտը ծարավ էր գրգռում և ապա հասանք ընդարձակ, լուսավոր խոհանոցը: Հաճին մի սեղանի վրա կռացած, մեջքով դեպի մեզ, ուռենու ճյուղերից հյուսված մի մեծ զամբյուղի մեջ ուտելեղեն էր դարսում: Բյուզանդ քեռին անմիջապես նկատեց մեզ: Նա երկար, փայտե գդալով ինչ-որ բան էր խառնում մի մեծ, սև կաթսայում: Մեզ տեսնելով, առանց գործից կտրվելու բղավեց. «Տեսե՛ք, տեսե՛ք, ով է եկել: Այդ խեղճ որբը երևում է երկու օր ոչինչ չի կերել»: Եվ տեսնելով Կարոլինին իմ թիկունքում՝ ավելացրեց. «Ա՛, ուրիշ մեկին էլ հետն է բերել: Աստված իմ, ես կսնանկանամ»:

Հաճին տարածեց թևերը, ցույց տալով, թե որքան ուրախ է մեզ տեսնելու համար: «Բարև, բարև, ճիշտ ժամանակին եկաք: Ես բաներ էի պատրաստում Մարթա մայրիկի համար և մտածում էի, թե ինչպես դրանք հասցնեմ իրեն: Տուն գնալուց առաջ դուք կարող եք հանդիպել նրան: Հելո՛, սիրուն աղջիկ»,— ավելացրեց նա, այս անգամ



անգլերեն դիմելով Կարոլինին: Կարոլինը շփոթված գլխով արեց:

— Ախ, յավրում,—ասաց Հաճին կարեկցությամբ,— խեղճ երեխա, կաշի ու ոսկոր է, սարդի նման կմախք:

— Կերակրիր նրան, կերակրիր,— գոռաց Բյուզանդ քեռին:

Կարոլինը նրա ձայնից ցնցվեց:

— Կերակրիր նրանց,—նորից գոռաց նա,— տանել չեմ կարող իմ ճաշարանում կմախքների:

Ես բարևեցի Սեդրակին, որը մի անկյունում նստած սոխ էր կտրատում: Այս աշխատանքը կատարելիս նա արցունքոտվում և քրտնում էր: Մինչ Բյուզանդ քեռին շարունակում էր բղավել, որ մեզ կերակրեն, Սեդրակը վեր թռավ և սկսեց դես ու դեն վազվզել, պահարանների և սառնարանի դռները բանալ ու գոցել, հանելով խմորեղենների, հացի, խորոված, պանրի, ձիթապտղի, մածնի և բազուկի ամաններ: Կարոլինի աչքերը ասես դուրս պրծան իր հաստ ակնոցի ետևից, երբ տեսավ այսքան ուտելիք:

— Օ՛, սա դեռ ի՞նչ է որ,— ասացի ես,— սա մի թեթև ճաշ է:

— Ի՞նչ ես ասում...

— Ահա, վերցրու,— և ես նրան տըվեցի մի լիքը ափսե:

Մինչ մենք համտեսում էինք մեր պընակներում շարված կերակրատեսակները, Հաճին մեր ետևում կանգնած խորհուրդներ էր տալիս և ինձանից տեղեկություններ քաղում Կարոլինի մասին:

— Աղջիկ ջան, ափսեումդ դիր այս ձիթապտուղներից, դա լավ է ըյարդի համար:

— Ի՞նչ ասաց,— փսփսալով հարցրեց Կարոլինը:

— Նա ինձ հարցրեց, թե դու արդյոք Նյու-Յորքո՞ւմ ես ապրում,— ասացի ես, որովհետև արդեն սովոր էի Հաճիի դիտողությունները թարգմանել կամեցածիս պես:

— Այո, Նյու-Յորքում եմ ապրում,— ասաց Կարոլինը,— վերջերս ենք տեղափոխվել Բոստոնից:

Հաճին, որը ձևացնում էր, թե հասկանում է անգլերեն, հարցրեց.

— Ի՞նչ է ասում, անգլերեն լավ չգիտե, այնպես չէ՞: Խեղճ աղջիկը սիրում ատամներ ունի, բայց ինչ վատ է, որ այսքան նիհար է: Այսպիսի նիհար երեխաները սովորաբար մեռնում են թոքախտից, մինչև քսան տարեկան դառնալը: Տես, ինչպես է ուտում: Երևի ընտանիքը շատ աղքատ է:

— Նա Բոստոնից է գալիս: Բոստոնում անգլերեն այդպես են խոսում: Նրանք աղքատ չեն, երկու ծառայող ունեն տանը,— ասացի ես:

— Դու որտեղի՞ց գտար նրան:

— Օրիորդ Էդիսոնի դպրոցն է հաճախում,— ասացի ես:— Մի դասարանում ենք:

— Ուրեմն նա օրիորդ Էպսում խանումի դպրոցի՞ց է,— ասաց Հաճին:— Որքան հասկացա ասածներիցդ, այդ օրիորդ Էպսում խանումը ամեն գիշեր պառկելուց առաջ լավ կլինի մի գլուխ հում սխտոր ուտի: Դա կուժեղացնի նրա արյունը: Նա դեռ հիսուներեք կիլոգրա՞մ է կշռում:

Ես մի անգամ փողոցում Հաճուն ցույց էի տվել օրիորդ Էդիսոնին:

— Ջղային կնիկ է երևում,— ասել էր Հաճին: Իսկ հիմա ասաց.— Ուրեմն այս աղջիկը Բոստոնից է: Բյուզանդ լսեցի՞ր... Տեսնես նա ճանաչո՞ւմ է Բատոյաններին: Այս հարուստ երեխաները միշտ չափազանց սոված են լինում: Աղախինները ամբողջ ուտելեղենը տանում են իրենց տները՝ կերակրելու իրենց ամուսիններին, իսկ տան երեխաները սոված են մնում: Խեղճ աղ-

չիկ, զավալը: Նրան ասա, մի քիչ էլ լոբի ուտի: Յա, յա, սիրուն աղջիկ, կեր,— ասաց նա Կարոլինին անգլերեն:

Ես սպասում էի, որ Կարոլինը ինձ հարցնի, թե ի՞նչ ասաց Հաննին, բայց նկատեցի, որ նա աչքերը չռած նայում էր Հաննիի բազուկին: Հաննին ծալել էր հագուստի թևերը, և Կարոլինը նկատել էր կապույտ նշանը:

— Հաննիները կրոնասեր են,— բացատրեցի ես:— Նա տարիներ առաջ Երուսաղեմ ուխտի է գնացել, իսկ երբ Երուսաղեմ ես գնում, դաջում ես թևդ՝ ի նշան ս. քաղաք այցելած լինելուդ: Դա քեզ մի տեսակ սրբացնում է:

Ասածս մի քիչ աննիշտ էր, բայց ուրիշ ի՞նչ կերպ բացատրեի Կարոլինին, թե ի՞նչ բան է հաննին:

— Աստված իմ,— ասաց Կարոլինը,— ի՞նչ հետաքրքիր ազգականներ ունես: Իմիններից ոչ մեկը դաջված չէ:

— Դա շատ վատ է,— ասացի ես:

Հաննին զամբյուղը լցրել էր տարբեր չափսի սափորիկներով, տուփերով և տոպրակներով, որոնք պարունակում էին պիստակ, արմավ, ծիրան, պանիր, լոխում և այլ բաներ, որպեսզի Մարթա մայրիկը ամբողջ մի շաբաթ ուտի՝ լուսամուտի առջև նստելիս:

— Չեմ կարծում, թե որևէ մեկը նրան այցելած լինի այսօր,— ասաց Հաննին: — Շատ կուրախանա քեզ որ տեսնի:

Նա զամբյուղի բերանը ծածկեց անձեռոցիկով:

— Այդ անպետք Լևոն քեռին,— Բյուզանդ քեռու ձայնը լսվեց խորքերից,— փող, հա փող, միայն փողի մասին է մտածում: Իր ազգականներին ե՞րբ է հիշում որ: Երեք շաբաթ է, Մարթա մայրիկին մի տող չի գրել: Քո ուղարկած նվերները նրան շատ քիչ մխիթարություն կպատճառեն:

— Լռիր,— ասաց Հաննին:— Նա գիտե, որ Լևոնը զբաղված է: Գիտե նաև, որ նա չի սիրում նամակ գրել: Լևոնը մշտապես մտածում է մեր մասին: Մարթա մայրիկը այդ էլ լավ գիտե:

— Բա՛,— ասաց քեռի Բյուզանդը, ասածը շեշտելու համար գլուխը փռից դուրս հանելով:— Ինչպես չէ, մտածում է մեր մասին... Նրա սիրտը կապարից է: Նա միայն մտածում է փողի՛, փողի՛, փողի՛ մասին, հասկացի՞ր...

— Նրանք կռվո՞ւմ են,— հարցրեց Կարոլինը, որը նորից սկսել էր ջղայնանալ:

— Ոչ,— ասացի ես,— նրանք միշտ վիճում են մեր Լևոն քեռու, հեռու Արևմուտքում գտնվող մեր միլիոնատեր ազգականի մասին:

Ես գիտակցում էի, որ մի փոքր չափազանցացնում եմ, բայց ո՞վ կարող էր իմանալ, թե որքան փող ունի Լևոն քեռին:

— Նա քիմիական մաքրման մի գործարան ունի:

— Օ՜,— ասաց Կարոլինը:

— Նա կարող է կես միլիոն ունենալ, քիմիական մաքրման մի ամբողջ գործարանի տեր է:

— Քո ազգականները այնքա՜ն հետաքրքրական բաներ ունեն,— ասաց Կարոլինը՝ մի տեսակ անօգնական շեշտով,— գործարաննե՜ր, ճաշարաննե՜ր և այլ բաներ: Իմինները ունեն միայն բաժնետոմսեր և նման անպետք բաներ:

— Աստված իմ, դա շատ վատ է,— ասացի ես: Շատ ցավում էի Կարոլինի համար և աշխատելով բարձրացնել նրա տրամադրությունը՝ առաջարկեցի.

— Չե՞ս ուզում ինձ հետ այցելել Մարթա մայրիկին: Նա իմ ամենատարիքոտ ազգականն է: Գրազ կգամ, որ դու նրա նման ծեր մարդ չես տեսել: Լևոն քեռուն նա է մեծացրել:

Կարոլինը համաձայնվեց գալ ինձ հետ:

Մարթա մայրիկը ապրում էր Երկրորդ պողոտայի վրա՝ մուգ քարե մի շենքի երրորդ հարկում: Այս հարկաբաժնում էր նրան տեղավորել Լևոն քեռին, երբ Մարթա մայրիկը իրենց հին երկրից եկել էր Ամերիկայի Միացյալ Նահանգներ: Երբ ես հարցնում էի, թե ինչո՞ւ Մարթա մայրիկը ապրում է ճաքճքված պատերով և թափած ծեփով այս սենյակում, որտեղ արևի լույսն անգամ փնտրվում է, ինձ պատասխանում էին, որ այդ ժամանակներում դա միակ հնարավորն էր: Իսկ հետագայում, երբ արդեն Լևոն քեռին նյութական միջոցներ ուներ և կարող էր նրա համար ավելի լավ բնակարան վարձել, Մարթա մայրիկը ինքն էր հրաժարվում. «Ամոթ ձեզ,— ասում էր նա,— որ ուզում եք խռովել մի պառավ կնոջ վերջին մի քանի ամիսները»: Դա հինգ տարի առաջ էր, երբ Մարթա մայրիկը իննըսուներկու տարեկան էր: Մի քանի ամիս անց նա հիվանդացավ թոքախտով, և մերձավորներին թվաց, որ իրականանում է պառավի կանխատեսությունը: Բայց Մարթա մայրիկը շարունակեց ապրել և ապրե՜լ, չնայած միշտ կրկնում էր, թե իր մեծագույն ցանկությունն է մեռնել: Մեկ առ մեկ մահացան նրա եղբայրներն ու քույրերը, ապա նրանց զավակները, իսկ երբ նա թևակոխեց իր ութսունը, արդեն չկային նաև նրանց թոռներից մի քանիսը: Երկարակեցությունը նրա միակ պերճանքն էր, և որովհետև նա բոլոր տեսակի պերճանքները համարում էր մեղսալի, ուստի և անընդհատ հիշեցնում էր, որ ինքը երբեք չի խնդրել այսքան երկար կյանք:

Մարթա մայրիկը միշտ կրկնում էր, որ ուզում է մեռնել, միայն թե մեկ անգամ ևս թող աստված իրեն շնորհի Լևոն քեռուն տեսնելու ուրախությունը: Լևոն քեռու գալուց և նորից Այովա վերադառնալուց հետո, Մարթա մայրիկը հիմա էլ ուզում էր ապրել, որովհետև Մելինե զարմուհին երեխա էր սպասում: Դրանից հետո էլ՝ որովհետև Քելեշը Ամերիկա պիտի ժամաներ: «Անմիջապես, որ Քելեշը գա հասնի, այլևս ապրելը իմաստ չունի»,— ասում էր Մարթա մայրիկը: Քելեշը եկավ, սակայն այն ժամանակ էլ Մելինե զարմուհու երեխայի կնքվելու հարցը մեջտեղ ելավ, ապա Ազնիվը պետք է Ամերիկա գար, իսկ Պողոսը իր քաղաքացիության փաստաթուղթը պետք է ստանար: Շաբաթվա մեջ մի քանի անգամ հայրս բժշկական պայուսակը առած գնում էր Մարթա մայրիկի տուն. սրսկում էր պառավին, հարկադրում, որ նա դեղերը կուլ տա: Հայրս լսում էր նրա սիրտը, չափում արյան ճնշումը: Մարթա մայրիկը հանդիմանում էր հորս իր ժամանակը և դեղերը մսխելու համար, իսկ հայրս, փոխադարձաբար, նրան կշտամբում էր, որ չի թողնում այս բնակարանը և չի գնում ազգականների հետ ապրելու, որպեսզի հիվանդանալու դեպքում նրանք խնամեն իրեն:

— Դուք շատ համառ կին եք,— ասում էր հայրս:

— Վա՜յ, բժիշկ ջան, այդ ի՞նչ ես ասում, համոզվա՞ծ ես, որ ես ճիշտ չեմ վարվում,— իրենն էր պնդում Մարթա մայրիկը:

Մարթա մայրիկի ապրած շենքի գետնահարկում չինական մի լվացքատուն կար: Տաք, օճառոտ գոլորշին փչեց մեզ վրա, երբ ես և իմ դասընկերուհի Կարոլինը անցանք դարպասով և սկսեցինք բարձրանալ թեք, խարխլված աստիճաններով:

Մարթա մայրիկը ապրում էր երրորդ



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

հարկում: Մենք ներս մտանք, առանց դուռը թակելու, որովհետև մեկ է, չէր լսելու թակոցը: Առանց նայելու՝ ես գիտեի, որ նա նստած է լուսամուտի մոտ, ձեռագործը ձեռին: Մարթա մայրիկը հելունով հյուսում էր մի մեծ բազմագույն ծածկոց՝ իրար միացնելով առանձին քառակուսիները: Եվ իմ հին բրդյա բաճկոնակների թելերը ես ճանաչում էի ծածկոցի գործվածքի մեջ: Մինչ մենք սենյակ էինք մտնում, անցավ գընացքը: Երկաթգծերը սենյակի հետ նույն բարձրության վրա էին, և թվում էր, թե գնացքը ուղիղ ներս է խուժում ու նորից դուրս գալիս, իր անցնելուց հետո թողնելով, որ խոհանոցի դարակների վրայի ամանները և կաթսաները դեռևս մի քանի րոպե չխկչխկան: Սենյակը փոքր էր, խճողված: Եթե ուզենայիր բացել կողքի սենյակի դուռը, տըրցակներով բացիկներ և լուսանկարներ կթափվեին ցած: Մեծ մասամբ Լևոն քեռու տարբեր տարիքի լուսանկարներն էին: Մի անկյունում կար 1917 թվականի մի հին նվագարկիչ՝ քառակուսի մի տուփ, լարելու բռնակը կողքին և շուշանաձև բարձրախոսը վրան: Իսկ նվագարկիչի վրա դրված էր ստվարաթղթի մի տուփ՝ մեջը ուզածդ գույնի և չափսի քուրջի կտորներ:

— Նա քնած է,— ասացի ես Կարոլինին, որը մոտեցել և կանգնել էր աթոռի մոտ:

— Օ՛, աստված իմ,— ճչաց Կարոլինը,— նա մեռած է, օ՛, ես տեսնում եմ, նա մեռած է: Աստված իմ, աստված իմ...

Ես շտապ նայեցի Մարթա մայրիկի դեմքին և տեսա, որ աչքերը բաց են և սևեռուն, իսկ բերանը կախ է ընկել: Ես նույնպես ուզեցի ճչալ, բայց դա կնշանակեր, թե ես հաստատում եմ նրա մե-

ռած լինելը: Իսկ նա չէր կարող, չպետք է մեռած լիներ: Ես ուզում եմ ժխտել նրա մահը՝ չնայած սառած աչքերին, շնչի առերևույթ բացակայությանը և մաշկի սպիտակությանը, որի վրա հիմա երակները ոչ թե բնական, այլ կարծես փորագրված լինեին:

— Ո՛չ, ո՛չ, մեռած չէ,— ասացի ես,— նա միշտ քնում է բաց աչքերով: Ահա բռնիր այս և դաղարեցրու ճչոցդ:

Կարոլինին տվեցի ձեռքիս զամբյուղը, որպեսզի նա անելու բան ունենա և սկսեցի շփել Մարթա մայրիկի ձեռքերը՝ արթնացնելու համար նրան: Նրա ձեռքերը սառն էին, պրկված և խոնավ: Եթե Կարոլինը չլիներ, ես չէի համարձակվելու դիպչել նրանց: «Դու մեռած չես,— շարունակում էի մտածել ես, առանց համարձակվելու մեկ անգամ ևս նայել դեմքին:— Դու մեռած ես թվում, որովհետև շատ ծեր ես: Դու չես կարող մեռնել հենց այսօր: Այնքան սպասեցիր, անցյալ շաբաթ ինձ ասացիր, թե սպասում ես, որ Լևոն քեռին ամուսնանա, հիշո՞ւմ ես... Դեռևս քո մեռնելու ժամանակը չէ, մի քիչ էլ սպասիր»: Ես սկսեցի հավատալ իմ ասածին: Կարոլինը այնքան հանդարտ էր, որ թվաց թե շունչը պահում է:

— Տես,— ճչաց նա հանկարծ:

Մարթա մայրիկի աչքերը շարժվել էին, և նրա կրծքից թռավ խորունկ մի հառաչ: Նրա մատներում ես մի թեթև շարժում զգացի և սկսեցի ավելի ուժեղ շփել դրանք, մինչև իմ կոկորդում գոյացավ մի հանգույց և արգելեց գոռալ. «Տեսա՞ր, ես քեզ չասացի՞, որ նա մեռած չէ»:

— Օ՛,— ասաց Կարոլինը,— նա շատ հիվանդ է: Նա մեռնելու է, վայ, տեր իմ,— և սկսեց ճղճղալ և լաց լինել, թե ուզում է տուն գնալ:

— Ձայնդ կտրիր,— ասացի ես,— նա արթնանալիս միշտ այդպիսի ձայներ է հանում: Դու էլ, եթե այսքան ծեր լինեիր, նույնը կանեիր: Եթե ուզում ես՝ գնա, բայց հանգիստ մնա:

— Չեմ իմանում, ո՞ր ճանապարհով գնամ,— հեծկլտաց Կարոլինը,— վախենում եմ ճամփան կորցնեմ: Ա՜խ, բայց ես ուզում եմ տուն գնալ:

— Սպասիր,— ասացի ես, և զգացի, որ ես նույնպես սկսում եմ վախենալ,— սպասիր, թող մի քիչ էլ նրան արթնացնեմ և կգամ քեզ հետ: Կգնամ ճաշարան և Հաճիին կասեմ, որ գա այստեղ, իսկ այնտեղից դենը դու արդեն գիտես ձեր տան ճանապարհը: Ապա ես կգնամ մեր տուն և կասեմ հորս, որ գա և սրսկի նրան, կամ դեղ տա: Նա այնքան ծեր է, որ միշտ պետք է սրսկվի:

— Օ՛, այո,— հարեց Կարոլինը,— բայց խնդրում եմ շտապիր:

— Մարթա մայրիկ,— բղավեցի ես,— այդ ես եմ: Նայիր, որևէ բան ուզո՞ւմ ես: Տես, Հաճին քեզ բաներ է ուղարկել: Մարթա մայրիկ, լա՞վ ես:

Նա փորձում էր կզակը բարձրացնել կրծքի վրայից, և բերանը շարժվեց.

— Հաճի...

Ինձ թվաց, որ նա ուզում է ասել. «Կանչիր Հաճիին, բժշկին»:

— Անպայման,— ասացի ես, և ասես ուսերիցս մի մեծ բեռ ընկավ: Քրտինքը ծորում էր թիկունքս ի վար:

— Անպայման, Մարթա մայրիկ, դու մի քիչ սպասիր, և նրանք շուտով այստեղ կլինեն: Ես կգնամ կկանչեմ նրանց, բայց դու սպասիր,— խնդրեցի ես: Մի բաժակ ջուր լցրի և մոտեցրի շուրթերին: Դա լավ ներգործություն ունեցավ, դեմքին մի քիչ գույն եկավ, և նա փորձում էր ժպտալ: Նա փորձեց շոյել իմ թուշը, բայց ձեռքն ընկավ գո-

գին, նախքան կկարողանար բարձրացնել և հասցնել դեմքիս:

— Դու սպասիր,— ասացի ես,— ընրանք շուտով կգան:

Ես գոռացի նրա ականջին, և նա նորից փորձեց ժպտալ, ասես լսել էր ինձ:

— Արի՛,— ասացի Կարոլինին, որը արդեն հասել էր դռանը:

Մենք վազեցինք ճաշարան, և հիմա, որ արդեն դրսում էի, ինձ թվաց, որ Մարթա մայրիկը մեռնում է: «Օ՛, խնդրում եմ շտապիր»,— գոռում էի ես: Բայց գրեթե միայն ինձ համար էի գոռում, որովհետև Կարոլինի սրունքները ավելի երկար էին, և նա ինձնից առաջ էր ընկել: «Ոչ, ոչ, անկյունից աջ թեքվիր: Շտապիր, խնդրում եմ շտապիր»:

Մենք ճաշարանի դռանը գրեթե բախվեցինք մի հաճախորդի, որը մտնում էր ներս:

— Հաճի՛,— ճչացի ես, երբ մենք վազում էինք ճաշասրահի միջով,— Հաճի՛, Հաճի՛, խնդրում եմ շտապես: Մարթա մայրիկը չափազանց հիվանդ է:

Երբ մենք խոհանոցից ներս մտանք, Հաճին արդեն շալը գցել էր ուսերին: Չհարցրեց, թե ինչ էր պատահել: Անցավ Սեդրակի մոտով, որը բերանը բաց կանգնել էր դռան մեջ և դարձավ ինձ.

— Մի քիչ շունչ քաշիր ու գնա՛ իմաց տուր հորդ:

Երբ ես շունչս մի քիչ տեղը բերեցի և Բյուզանդ քեռուն պատմեցի եղելությունը, նա ջղայնացած գոռաց.

— Այդ անպետք Լեոն քեռին, չգիտեմ ինչու չէր նստում պառավի կողքին՝ մարդավարի, որ նա մեռներ խաղաղված սրտով:

*Անգլերենից թարգմ.*
*ՇԱՔԵ ՎԱՐՍՅԱՆԸ*




◆ Ամենաառաջին խարտոցը մարդիկ պատրաստել են շնաձկան կաշվից: Այդպիսի խարտոցներով հղկել են փայտ, նույնիսկ մարմար: Խաղաղ օվկիանոսի կղզիներում կան տեղեր, ուր մինչև այժմ էլ ձկան կաշվից են խարտոցներ պատրաստում:

◆ Աշխարհի ամենահին մինչև այժմ գործող փարոսը Էլբայի գետաբերանի Հեյվերկ կղզում գտնվող փարոսն է: Առաջներում կրակը պահպանվում էր փայտեր այրելով, հետո նավթը փոխարինեց փայտին, իսկ այժմ էլեկտրական լույսով է լուսավորվում փարոսը:

◆ Անգլիացի մի վաճառական, Գոնվեյ անունով, Ասիայում երկար ժամանակ ճանապարհորդելուց հետո 1750 թվականին Չինաստանից վերադարձավ հայրենիք և հետը բերեց հովանոց: Հովանոցով մարդու տեսքը հայրենակիցներին դուր չեկավ և նրան ծաղրանքի ենթարկեցին: Սակայն Գոնվեյը համառ էր: Հետևյալ անձրևային օրը նա նորից հովանոցով դուրս եկավ փողոց: Աստիճանաբար գտնվեցին նրան հետևողներ և կամաց-կամաց հովանոցը վայելեց եվրոպացիների համակրանքը:

◆ Հակաարևային ակնոցները ամենևին էլ նորություն չեն: Թութանհամոնի դամբարանում գտել են այդպիսի ակնոցներ: Նրանք 3300 տարեկան են:

◆ Արհեստական ատամները նույնպես նորություն չեն: Ֆլորենցիայի թանգարանում ցուցադրված է ոսկուց պատրաստված պրոթեզ, որը շատ նման է ժամանակակից պրոթեզներին: Այդ պրոթեզը պատրաստված է 2600 տարի առաջ:

# ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՓԱՓԱԶՅԱՆ

## Դեպի մեր մշակույթի ակունքները

Երբ ես անցյալ տարվա հոկտեմբերին մասնակցեցի Վարշավայում կայացած Շոպենի անվան միջազգային մրցույթին, բազմաթիվ գնահատականներից ինձ առանձնապես հուզեց հանձնաժողովի նախագահ, դիրիժոր Կազիմիր Կորդի մի տողը.

— Երբ նվագում է Փափազյանը, ես փակում եմ աչքերս և թվում է, թե լսում եմ ամենաճշմարտացի Շոպենին:

Նույնը պատահեց նաև 1974 թվականին Չեխոսլովակիայում, Բեղըրժիխ Սմետանայի անվան մրցույթում: Մասնագետների միահամուռ կարծիքով, Սմետանայի պոլկաները իմ կատարմամբ հնչեցին զարմանալիորեն չեխական ազգային ոգով:

Իսկ 1979 թվականին Պորտուգալիայում, բացի առաջին մեծ մրցանակից, ինձ հանձնվեց նաև պորտուգալացի կոմպոզիտոր Լոպիշ Գրասայի ստեղծագործությունների լավագույն մեկնաբանման մրցանակը:

Ի՞նչն է ինձ օգնում ճիշտ հասկանալու և ճիշտ մեկնաբանելու Շոպենին ու մյուս մեծ կոմպոզիտորներին: Յուրաքանչյուր անհատի համար հարազատ ժողովրդի մշակույթը համաշխարհային մշակույթի դռները բանալու ամենահուսալի բանալին է: Հանձինս Կոմիտասի ես գտել եմ անհատնում մի շտեմարան:

Նույնը ես կասեի լեզվի մասին: Փոքրուց ես մեծ հակում եմ ունեցել դեպի լեզուները: Նախ ծնողներիցս, որ Հունաստանից էին եկել, ես սովորեցի հունարեն, հետո նաև անգլերեն, ռուսերեն, թուրքերեն: Ես զգում էի, որ օտար լեզուներ սովորելիս, ինձ շատ է օգնում մայրենի լեզվի իմ իմացությունը:

Լեզուն, մարդկային խոսքն է նաև իմ արվեստի հիմնաքարը, որովհետև յուրաքանչյուր կոմպոզիտորի ստեղծագործության մեղեդիների հիմքում ընկած են ազգին բնորոշ լեզվական ինտոնացիաները: Եվ, կարծես, իտալացի երաժշտագետ Ֆրանկո Ֆայենցը կռահել էր իմ գաղտնիքը՝ ինձ անվանելով ստեղնաշարի հայազգի բանաստեղծ:

Սիրելի դպրոցականներ, ջերմորեն սիրեք ձեր մայրենի լեզուն, ուսումնասիրեք հայոց պատմությունը, ծանոթացեք մեր հարազատ մշակույթին, և կհամոզվեք, որ ինչպես մեծ պատմահայր Մովսես Խորենացին է ասել, թեև փոքր ածու ենք, բայց մեզանում էլ մեծ գործեր շատ են կատարվել:

Թանկ գնահատեք ձեր ժամանակը, թող յուրաքանչյուր օր սպառվի որևէ նոր գիտելիքի իմացությամբ, որպեսզի հասնեք այնպիսի մի բարձունքի, որտեղից ձեր անվան հետ մեկտեղ հընչի Հայը և Հայաստանը:

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՓԱՓԱԶՅԱՆ*

*դաշնակահար, միջազգային մրցույթների դափնեկիր*



եցգետինը ապրում էր գետում: Այսինքն, նա հիմա էլ է այնտեղ ապրում, բայց այն ժամանակ խոսել գիտեր: Եվ պետք է ասել, որ բավականին գեղեցիկ էր խոսում: Բայց ինքը՝ Խեցգետինը, այլ կարծիքի էր: Ո՛չ, իհարկե համաձայն էր, որ ինքը գեղեցիկ է խոսում, բայց գտնում էր, որ ինքը շատ ավելի բազմաշնորհ է և, մասնավորապես, ավելի գեղեցիկ կխոսեր, եթե գեղեցիկ լիներ այն լեզուն, որով ինքը խոսում է:

Գարնանը եղեգնուտում նախ երևացին բադերը: Նրանց լեզուն ուղղակի հիացրեց Խեցգետնին: «Ա՛յ սա լեզու է,— մտածեց Խեցգետինը,— այս լեզվով խոսողը ոչ միայն ավելի կրթված կերևա, այլև ավելի առաջ կգնա»: Հանձին բադերի Խեցգետինը տեսավ իր բազմաշնորհությունը դրսևորելու լավագույն հնարավորությունը, մոտեցավ եղեգնուտին, սկսեց ականջ դնել և, իսկապես, շուտով սկսեց բադերեն խոսել: Նա արհամարհում էր խեցգետներենը, իր ցեղակիցներին նույնպես և ամբողջովին բադերին ու բադերենին էր նվիրվել:

Բայց բադերը երկար չմնացին գետի եղեգնուտում: Նրանք ավելի հյուսիս թռան, իսկ հարավից նրանց փոխարեն եկան սագերը: Սագերի լեզուն է՛լ ավելի հիացրեց Խեցգետնին: Բայց սագերենը հազիվ տիրապետած, նա ստիպված եղավ կարապերենին անցնել, որովհետև սագերը նույնպես ավելի հյուսիս գնացին, իսկ նրանց փոխարեն եկան կարապները: Միանգամից ասեմ, որ Խեցգետնի կարապերենի գլխին էլ նույն փորձանքը եկավ: Ճիշտ է, նա ուղղակի սքանչացավ կարապերենով և շատ արագ յուրացրեց այն, բայց դրանից էլ ոչ մի օգուտ չըքաղեց, որովհետև կարապները շարունակեցին ճանապարհը դեպի հյուսիս, եղեգնուտը զիջելով ձկնկուլներին:

Այս անգամ Խեցգետնի բախտը բերեց. ձկնկուլները մնացին եղեգնուտում: Նրա բախտը բերեց նաև նրանով, որ նախորդ լեզուներից և ոչ մեկը նրան այնպես չէր հիացրել ու սքանչացրել, ինչպես հիացնում էր ու սքանչացնում ձկնկուլների լեզուն: Ձկնկուլերենը լսելիս նա ուղղակի հալվում էր: Եվ, իհարկե, ավելի արագ սովորեց, քան բադերենը, սագերենը և կարապերենը: «Այ քեզ լեզու, այ քեզ գեղեցկություն,— չէր կշտանում հիանալուց Խեցգետինը,— այս լեզվով խոսելը ուղղակի երջանկություն է»:

Այդ ամառ ձկնկուլները, տեր ու տիրական էին գետում, և Խեցգետինը առավոտից իրիկուն նրանց շուրջն էր պտտվում: Ցույց էր տալիս, թե որ քարի տակ են ձկները թաքնվել, մատնում էր գորտերի տեղը և քաղցր ու կլկլան ձայնով ասում, որ այդ փոքրիկ, չնչին ծառայությունները կատարում է բոլորովին-բոլորովին անշահախնդրորեն: Խեցգետինը ձկնկուլներին առավոտյան «բարի լույս» էր ասում, երեկոյան «բարի գիշեր», ցերեկվա ընթացքում րոպեն մեկ ասում էր «բարի ախորժակ» (րոպեն մեկ, որովհետև ձկնկուլները շատակեր էին), և այդ բոլորը, իհարկե, ձկնկուլերեն և, իհարկե, առավոտից երեկո ձկնկուլերեն բամբասում էր իր ցեղակիցներից ու խեցգետներենից, որը արդեն համարյա մոռացել էր:

Չի կարելի ասել, թե ձկնկուլներին դուր չէր գալիս, որ Խեցգետինը ձկընկուլերեն է խոսում: Բայց այդ Խեցգետնին էր թվում, թե ինքը հիանալի է խոսում ձկնկուլերեն: Իրականում նա խոսում էր սոսկալի խեցգետնային առոգանությամբ, որը ուղղակի սղոցում էր ձկնկուլների նուրբ լսողությունը: Սակայն նրանք ներողամտորեն էին տրամադրված, որովհետև Խեցգետի-

նը կաշվից դուրս էր գալիս նրանց հանոյանալու համար։ Բացի այդ, ձկնկուլ երևալու իր ապարդյուն ու անճարակ ջանքերով Խեցգետինը զվարճացնում էր նրանց։

Խեցգետինը շատ ուշ գլխի ընկավ, որ ինքն իզուր է կարծել, թե ձկնկուլները համիտյան տեր ու տիրակալ են լինելու գետում կամ գոնե եղեգնուտի ծանծաղուտում։ Սառնամանիքը գալիս էր և նրա հեռավոր շունչն առնելով, ձկնկուլներն իրար անցան։ Նրանք պատրաստվում էին հարավ չվել։ Իրարանցումն է՛լ ավելի մեծացավ այն օրը, երբ ձկնկուլները դեռ չէին հեռացել, իսկ եղեգնուտում շունչը տեղը բերելու համար մեկը մյուսի ետևից վայրէջք էին կատարում ավելի հյուսիս գնացած բադերը, սագերը, կարապները։ Այդ իրարանցման մեջ ոչ ոք ժամանակ չուներ Խեցգետնով զբաղվելու, բայց նա շատ լավ էր հասկանում, թե ինչ կկատարվի իր հետ, եթե նրանք գնան, իսկ ինքը մնա։ Եվ դիմեց ձկնկուլներին։ «Ինձ էլ տարեք ձեզ հետ,— ասաց,— չէ որ ես մոռացա իմ լեզուն, որպեսզի ձերը սովորեմ»։ Ձկնկուլները չասացին՝ ոչ, նրանք ասացին՝ խնդրեմ, թռիր մեզ հետ, և չնայած խումապահար էին, ծիծաղեցին, որովհետև ավելի ծիծաղելի բան չկար, քան Խեցգետնին թռչունի դերում պատկերացնելը։ Սարսափահար Խեցգետինը դիմեց բադերին, սագերին ու կարապներին։ Ուզում էր ասել. «Գոնե դուք ինձ մի լքեք, չէ որ նաև հանուն ձեզ եմ ես հեռացել իմ ցեղակիցներից», բայց սարսափով զգաց, որ ինքն էլ չի հասկանում իր ասածը, որովհետև խառնում է բադերենի, սագերենի, կարապերենի ու ձկնկուլերենի բառերը։ Իհարկե, բադերը, սագերը, կարապները նույնպես չհասկացան նրան, բայց եթե անգամ հասկանային, համոզված եղեք, կպատասխանեին ճիշտ այնպես, ինչպես ձկնկուլները պատասխանեցին։ Իսկ սառնամանիքի հեռավոր շունչը օրեցօր ավելի ու ավելի պարզորոշ էր զգացվում, և աշնանային մի առավոտ եղեգնուտը դատարկվեց։

Այդ աշուն և այդ ձմեռ Խեցգետինը գոնե աշխատում էր արժանապատվություն խաղալ։ Գիտեր, որ նախկին ցեղակիցները իրեն չեն ընդունի և ձևացնում էր, թե ինքը չի ուզում մոտենալ նրանց։ Ամբողջ աշունն ու ամբողջ ձմեռը Խեցգետինը անցկացրեց մեկուսի, ուռած ու փքված, իսկ երբ նորից գարուն եկավ...

Երբ նորից գարուն եկավ և եղեգնուտում նորից երևացին ձկնկուլներն ու մյուս թռչունները, Խեցգետինը, սրտում թաքուն մի հույս, անհամարձակ մոտ գնաց։ Բայց դեռ բերանը չէր բացել, որպեսզի ողջունի իր բարեկամներին, երբ ձկնկուլներից մեկը կտուցով, տուր թե կտաս, խփեց նրա գլխին։ Ո՛չ, նա Խեցգետնին կուլ չտվեց (դա ոչ ձկնիկ էր, ոչ էլ գորտ, չոր էր ու ոսկրոտ), բայց կտուցով բռնեց ու մի կողմ շպրտեց։ Բադերից, սագերից ու կարապներից ոմանք էլ իրենց կտուցներն ամրությունը Խեցգետնի վրա փորձեցին, որից հետո նա սուսուփուս քաշվեց գետի խորքը, մտավ քարի տակ։

Այսպես Խեցգետինը լրիվ մենակ մնաց։ Դեպի ցեղակիցները վերադարձ չկար, նոր բարեկամները նույնպես չէին ուզում ճանաչել նրան։ Եվ քանի որ այլևս ոչ մեկի հետ չէր շփվում, ոչ մեկի հետ չէր խոսում, խոսելը լրիվ մոռացավ։

Ահա այսպես Խեցգետինը պատժվեց իր սնապարծության պատճառով։ Այդ օրվանից էլ նա համր է, և այնքան է չարացել, որ երբեմն չարությունը թափում է սրա-նրա ոտքի վրա, ամուր բռնում է իր ճանկերով։ Ցավ, ինչ խոսք, նա պատճառում է, բայց ինքը ոչինչ չի շահում։



# ԿԱՐԴԱ ԱՅՍ ԳԻՐՔԸ

## ԱՆԴԵՐՍԵՆ «ՀԵՔԻԱԹՆԵՐ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐ»

Նոր տարվա երեկո է։ Լուցկի վաճառող աղքատ աղջնակը սառած ոտքերը տակը հավաքած, նստում է քաղաքի փողոցներից մեկի անկյունում ու երազում զարդարված տոնածառի, տաքուկ սենյակի մասին, հետո հիշում է իր բարի տատին, որն ասես թե անա եկավ, բռնեց իր ձեռքը, լույսերի միջով բարձրանում է վեր, շատ վեր... Որքա՜ն գեղեցիկ էր նա՝ ձյան փաթիլները մազերի մեջ...

Դու ուզում ես հանդիպե՞լ նրան։ Նա ապրում է Հանս Քրիստիան Անդերսենի «Հեքիաթներ և զրույցներ» ժողովածուի «Աղջիկը և լուցկիները» հեքիաթում։ Մյուս հեքիաթներում էլ ուրիշ-ուրիշ շատ հերոսներ են ապրում։ Հեքիաթներից մեկում հախճապակե ծխնելույզ մաքրողը ծխնելույզի անցքով փախցնում է հախճապակե հովվուհուն փայտե պահարանից դեպի մեծ աշխարհ։ Մեկ ուրիշ հեքիաթում են ապրում Մեծ և Փոքր Կլաուսները։ Մեծ Կլաուսը չար է և նախանձ, իսկ Փոքրը՝ հնարամիտ։ Փոքրը այնպես է հիմարացնում Մեծին, որ նա միշտ ծիծաղելի վիճակների մեջ է ընկնում։ Մեկ ուրիշ հեքիաթում ապրում է Օլե Լուկոյեն։ Նա գիտի, թե երեխաներից ով է չար, ով՝ խելոք։ Որքան հրաշալի հեքիաթներ գիտի նա խելոք երեխաների համար, որ պատմում է նրանց շաբաթվա բոլոր յոթ գիշերներին։

Անդերսենի հեքիաթների հերոսները նազելի ծաղիկներ են, ճերմակ կարապներ, բարի զինվորներ, սիրունիկ երեխաներ և, իհարկե, նաև կախարդներ ու վհուկներ։ Իսկ ինչպե՞ս են ապրում նրանք, ի՞նչ զարմանալի արկածներ են անցնում նրանց գլխով, կիմանաս, եթե միայն նստես ու կարդաս։

Անցնող տարիները հիշողությունից չեն ջնջում այդ պատմությունները, որովհետև հեղինակը նրանց հիշողությունից չջնջվելու հատկություն է տվել։

Ժողովածուն, որ «Սովետական գրող» հրատարակչությունը վերահրատարակել է 1980 թվականի վերջին, հրաշալիորեն նկարազարդել է նկարիչ Վադինակ Մանդակունին։

*ՀՈՒՇԱՆԻԿ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ*





# ՕՖԵՆԲԱԽՆ ՈՒ ՕՊԵՐԵՏԸ

*ՔԻՆԱ ՊՐՈԴԱՆՈՎԱ*

Մի անգամ, հանդիպելով ավստրիացի կոմպոզիտոր Յոհան Շտրաուսին, Ժակ Օֆենբախն ասել է. «Պարոն Շտրաուս, ձեզ Վիեննայի Օֆենբախ են անվանում»: Շտրաուսը պատասխանել է. «Իսկ ձեզ, պարոն Օֆենբախ, Փարիզի Շտրաուս կանվանեն»:

Եվ իսկապես, դասական օպերետի մասին խոսք լինելիս, անպայման հիշվում են նրա երկու նախահայրերի՝ Յոհան Շտրաուսի և Ժակ Օֆենբախի անունները:

Օպերետ նշանակում է փոքրիկ օպերա: Սակայն ժամանակի ընթացքում այս հասկացության իմաստը փոխվել է: Սկզբում Օֆենբախն ինքն էլ օպերետ էր անվանում կարճ մանրապատումները, որոնց հիմքում հաճախ ընկած էին լինում թերթերի խրոնիկայից վերցրած անեկդոտները: Սրամիտ տեքստը, բեմական զվարճալի միջոցները, ռիթմիկ շարժուն պարերը և ուրախ քառյակները դրանց դարձնում էին աշխույժ, գրավիչ:

Օֆենբախի օպերետը, որը ծնունդ էր առել 19-րդ դարում՝ Ֆրանսիայում, տարբերվում էր վիեննականից սոցիալական սրությամբ: Նապոլեոն 3-ի բուրժուական, արդեն քայքայում ապրող միապետությունն իր փտած ու ծախու բարձրաստիճան հասարակությամբ, պարտությունը ֆրանս-պրուսական պատերազմում (1870—1871 թթ.), Փարիզի կոմունայի ջախջախումը (1871 թ.) չէին կարող չխոովել կոմպոզիտորի քաղաքացիական կրակոտ ու զգայուն խիղճը: Նրա մեղեդային երաժշտական ներկայացումները, զվարճալիության դիմակի տակ կծու ծաղր էին թաքցնում, դառնում տիրող վերնախավի բարքերը մերկացնելու զենք, հասարակական բարոյականության հայելի:

Ծնվել է նա 1819 թվի հունիսի 20-ին, Քյոլնում: Օֆենբախ նրա կեղծանունն է: Վաղ հասակից զբաղվում էր երաժշտությամբ: Հայրը նրան ջութակ նվագել է սովորեցնում: Տանը թավջութակ էլ կար, բայց ծնողները վտիտ Ժակին թույլ չէին տալիս նվագել այդ գործիքը: Ժակը նրանցից թաքուն ինքնուրույն տիրապետեց նաև այդ գործիքին: Եվ որքան մեծ եղավ ծնողների և ունկնդիրների զարմանքը, երբ մի քանի ամսից փոքրիկ Ժակը հանդես եկավ Հայդնի կոնցերտներից մեկի կա-





Դոմյեի ծաղրանկարները՝ Օֆենբախի օպերետների թեմաներով

տարումով: Տասներկու տարեկան հասակում արդեն ինքնուրույն համերգներ էր տալիս, վարպետորեն կատարելով նաև իր սեփական ստեղծագործությունները: Իսկ երկու տարի անց դարձավ Փարիզի կոնսերվատորիայի ուսանող:

1839 թվին ընդունվում է «Պալե ռոյալ» թատրոնը, որտեղ նրա պարտականությունն էր ներկայացումների և ընդմիջումների համար երաժշտություն ընտրելը: Իր սեփական ստեղծագործությունները դեռևս հաջողություն չէին ունենում: Որոշ ժամանակ էլ աշխատում է «Կոմեդի ֆրանսեզ» թատրոնում և միայն 1855-ին նրան հաջողվում է հիմնել իր սեփական թատրոնը՝ «Բուֆֆ-Պարիզյենը», որտեղ նա իրեն դրսևորում է և՛ որպես տաղանդավոր ռեժիսոր, և՛ ձեռներեց ադմինիստրատոր, և՛ երիտասարդ տաղանդների հայտնագործող ու ոգեշնչող:

Հաջողություն են ունենում Օֆենբախի նաև առաջին մեկ գործողությամբ օպերետները: Սակայն կատարյալ փառք բերեց նրան «Օրփեոսը դժոխքում» երեք գործողությամբ օպերետը: Ժամանակին նշանավոր քննադատ Ժյուլ Ժանենի չար հարձակումները այս օպերետի վրա, որը նրա արտահայտությամբ «կասկածի տակ էր առնում մշակութային արժեքները», նպաստեց նրա անսպասելի հաջողությանը: Հասարակական սկանդալ ծագեց, որն արտակարգ հետաքրքրություն առաջացրեց: Հասարակությունը հորդեց օպերետի ներկայացման սրահը: Հաջողությունը կտրուկ փոխեց կոմպոզիտորի կյանքի ընթացքը: Նա նշանավոր դարձավ: Ողջ Եվրոպայով մեկ հնչեցին նրա օպերետները, որոնք հաճախ գրգռում էին իշխանություններին:

Օֆենբախը վախճանվեց 1880-ի հոկտեմբերի 4-ին, թողնելով հարյուրից ավելի օպերետ և երաժշտական ինտերմեդիաներ: Նրա նրբագեղ, թեթև երաժըշտության երգայնությունն ու պարզությունը իր սուր ու նրբին ռիթմերով, ժողովրդի սեփականությունը դարձրին այն: Նրա պարային ռիթմերը հորդեցին Եվրոպայի քաղաքների փողոցները, մտան մարդկանց կյանքի մեջ: «Գեղեցկուհի Հեղինեն», «Օրփեոսը դժոխքում» օպերետները, «Հոֆմանի հեքիաթները» ռոմանտիկական օպերան մինչև օրս էլ չեն իջնում աշխարհի բեմերից:

*Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*

# ԿԵՂԾԻՔ

Այս դեպքն ինձ պատմել է պաշտոնաթող մի ծովային, կյանքի դժվարին ճանապարհ անցած բարեսիրտ մի մարդ:

Հայրենական մեծ պատերազմի ժամանակ նա ծովայինների վաշտի հրամանատար էր, որը անչափահաս տղաներից, համարյա երեխաներից էր բաղկացած:

Քառասունչորս թիվն էր: Տղաները ավարտում էին դասընթացները: Նրանցից էր Սոկոլովը՝ հասկացող, ջանասեր մի տղա:

Մի օր վաշտի հրամանատարին լուր տվին, որ Սոկոլովի հայրը՝ ծովային հետևակի անհետ կորած համարվող մի լեյտենանտ, հայտնվել է: Հոսպիտալից դուրս է գրվել, գնացել իր զորամասը, այնտեղ իմացել, թե որտեղ է սովորում իր որդին, և ռազմաճակատ մեկնելու ճանապարհին ուզեցել է տեսնել որդուն:

Վաշտի հրամանատարը նայում է օրացույցին. հայր Սոկոլովը ուր որ է գալու է: Կանչում է պատանի Սոկոլովին, հայտնում հոր գալու մասին և ավելացնում, որ այդ ուրախության առթիվ ամբողջ օրը նա ազատվում է պարապմունքներից:

Լեյտենանտ Սոկոլովը ժամանում է, բայց պատանի Սոկոլովն անհետացել էր: Միայն երեկոյան են գտնում նրան: Տղան երեխայի պես լաց է լինում և չի ուզում ներկայանալ հորը: Բայց երբ լեյտենանտ Սոկոլովը այնուամենայնիվ տեսնում է նրան, գունատվում է.

— Սա իմ որդին չէ,— շշնջում է նա և ճակատը տրորում, ասես կասկածելով, թե արդյո՞ք հիշողությունը չի դավաճանում:

Կարճ ասած, վաշտի հրամանատարը հարկադրված է լինում զեկուցագիր գրել ծովայինների դպրոցի հրամանատարին: Զեկուցագիրը բաղկացած էր մի քանի էջից և իմաստն այն էր, որ ծովային Սոկոլովը ամենևին էլ Սոկոլովը չէ:

Դպրոցն ընդունվելու էին դիմել երկու

## ՊԱՏՄԵԻՆ՝ ՉԷԻ ՀԱՎԱՏԱ



ՀԱԿՈԲ ԳՈՒՐՈՒՆՅԱՆ

Գետափին կարթով ձուկ էի որսում: Կիրակի էր, ամպամած մի օր:

Մեկ էլ իմ թիկունքում խշշոց լսեցի: Ծրջվեցի, բայց ոչինչ չնկատեցի: Մտածեցի, թե չլինի՞ օձ է: Ապահովության համար մի քանի քայլ հեռացա այդտեղից և էլի կարթը ջուրը գցեցի:

Խշշոցը շարունակվեց: Կարթաձողը հենեցի ջրի վրայով ձգված մի ճյուղի և դարձյալ նայեցի խշշոցի կողմը:

Վերջապես ցախերի միջից դուրս եկավ մի սև գունդ:

— Ոզնի՜...

Նի մի պահ կանգ առավ, նայեց շուրջը և շարժվեց դեպի ինձ:

— Այս ի՞նչ բան է...

ընկերով: Սոկոլովը բժշկական քննությունն անցել էր բարեհաջող, իսկ ընկերոջը, վատ տեսողության պատճառով, մերժել էին: Եվ քանի որ Սոկոլովը ընկերոջ համար պատրաստ էր ամեն բանի, քաշում է նրան աչքից հեռու մի անկյուն և արագ փոխանակում են փաստաթղթերը: Սոկոլովն ընկերոջն ասում է. «Դու կլինես Սոկոլով, հասկացա՞ր: Իսկ ես հետևյալ ընդունելությանը կընդունվեմ, կամ կգնամ ռազմաճակատ»:

Այսպես, իսկական Սոկոլովը, ուրիշ ազգանունով գնում է, ասպարեզի վրա մնում է նոր Սոկոլովը:

Նա սովորում էր հինգերով: Բայց քանի որ տեսողությունը վատ էր, պատկերացրեք, թե որքան դժվար էր նրա համար այդ թաքցնելը:, Օրինակ, թվացանկերը, որոնցով բժիշկը ստուգում էր տեսողությունը, կեղծ Սոկոլովը սովորել էր անգիր: Եվ եթե լեյտենանտ Սոկոլովի գալու պատահականությունը չլիներ, տղան այդպես էլ կապրեր ուրիշի ազգանունով: Զեկուցագրում վաշտի հրամանատարը խընդրում էր՝ նկատի ունենալով, որ տղան թեև դպրոց է ընկել կեղծ միջոցով և հետո երկու տարի թյուրիմացության մեջ է պահել թե՛ վաշտի հրամանատարներին, թե՛ բոլոր դասատուներին և բոլոր ընկերներին, բայց նրան բոլորը համարում են իրենց հավատարիմ ընկերը... Իսկ ինքը՝ կեղծ Սոկոլովը, բոլոր առարկաներից լավ առաջադիմություն է ցուցաբերել, բացի հրաձգությունից, որի պատճառը նոր հայտնաբերված վատ տեսողությունն է:

Զեկուցագրի վերջում վաշտի հրամանատարը խնդրում է՝ նկատի ունենալ նաև լեյտենանտ Սոկոլովի խնդրանքը, որն արդեն ամեն բան գիտի և մեկնում է ռազմաճակատ, իր հերթին միջնորդում է լինել ներողամիտ ինքնակոչ Սոկոլովի նկատմամբ, պատրաստ է ինքը ուզած պահին որդեգրել նրան, տալով իր ազգանունը՝ Սոկոլով:

Հետևյալ օրը դպրոցի պետը կանչում է վաշտի հրամանատարին և նավաստուն: Սեղանին զեկուցագիրն էր, որի վրա, ձախ անկյունում, թեք գրված էր որոշումը՝ նավաստուն վերադարձնել իր իսկական ազգանունը: Տալ նոր վըկայական և հնարավորություն՝ ավարտելու դպրոցը:

*Օ. ՕՐԼՈՎ*

---

Ոզնին սովորաբար մարդ տեսնելիս խուսափում է նրանից:

Բայց նա եկա՜վ, եկա՜վ և ոտքերիս մոտ կանգ առավ ու ինձ է նայում:

— Այս ի՞նչ հրաշք է...

Ոզնի ես շատ էի տեսել, և երբ փորձել էի բռնել, գլուխը քաշել էր իր փշերի տակ և անշարժացել... Կամաց կռացա, ու նայում եմ՝ ես այս տարօրինակ ոզնուն, նա՝ ինձ:

— Ոզնի ջան, բարև:

Փորձեցի գլուխը շոյել: Չշարժվեց: Նրա փոքրիկ գլխի և վզի վրա նկատեցի բազմաթիվ խոշոր-խոշոր տզեր:

Ահա թե ի՞նչն էր նըրան բերել ինձ մոտ:

— Ոզնի, եկար որ օգնե՞մ քեզ...

Ես մեկ-մեկ տզերը պոկեցի, ջուրը գցեցի. Ոզնին, թվում է, նայում էր շնորհակալությամբ:

Երբ բոլոր տզերը հեռացրի, ոզնին մեկ էլ նայեց ինձ և հուշիկ հեռացավ:

Ուղղակի հրաշք էր, ուրիշը պատմեր՝ կըղծվարանայի հավատալ:



# ՍՈՎՈՐԻՐ ԿԱՐԴԱԼ ԲՆՈՒԹՅԱՆ ԳԻՐՔԸ

Երբ փոքր էի, հորեղբայրս հաճախ էր ինձ զբոսայգի տանում, ժամերով շրջում էինք բնության գրկում: Նա զարմանալիորեն լավ գիտեր բնությունը և սիրում էր գուշակություններ անել եղանակի, կենդանական ու բուսական աշխարհի հետ կատարվող փոփոխությունների, բնության զանազան երևույթների պատճառների մասին: Ոչ մի երևույթ, ոչ մի նորություն չէր վրիպում նրա աչքից: Կրթված մարդ էր, հարուստ գիտելիքներ ուներ: Նրան մեծ հարգանքով «Մարալիկի Միչուրին» էին անվանում, քանի որ առաջին անգամ նա էր պտղատու այգի հիմնել Մարալիկի բարձրլեռնային, անջրդի պայմաններում, աճեցնելով մեծ քանակությամբ տանձ, խնձոր, սալոր, կեռաս, բալ և այլ պտղատուներ: Հետագայում նրա փորձը լավ օրինակ հանդիսացավ այդ լեռնային շրջանի բնակիչների համար, որոնք այժմ մեծ քանակությամբ պտղատուներ են աճեցնում:

Զբոսանքի ժամանակ հաճախ էր պատահում, որ հորեղբայրս, դիտելով գրեթե անամպ երկինքը, շտապեցնում էր տուն վերադառնալ, պատճառաբանելով, որ շուտով անձրև է տեղալու:

— Ինչպե՞ս թե անձրև է գալու,— զարմանում էի ես,— չէ՞ որ երկինքը միանգամայն անամպ է:

Նա ներողամտորեն նայում էր ինձ ու հանգիստ բացատրում.

— Զգո՞ւմ ես, արևը «կծում է»: Նը-

շանակում է՝ օդում խոնավությունը ավելացել է: Մեղուները, որ մի ժամ առաջ աշխուժորեն ծաղկից-ծաղիկ էին թռչում, արդեն տուն են վերադարձել, այլևս չեն երևում: Հյուսիսային խոնավ, թույլ քամի է փչում: Որոշ ծաղիկներ արդեն փակում են իրենց պսակաթերթիկները, իսկ թռչունները լռել են և շատերը թաքստոց են որոնում...

Իսկապես... այդ բոլորը պարզորոշ կարելի էր նկատել: Իսկ ես, բնության հետ կատարվող այդ փոփոխությունների վրա ուշադրություն չէի դարձել...

Տուն էինք շտապում և հաճախ հազիվ էինք հասցնում «տուն գցել» մեզ: Երկինքը արագորեն ծածկվում էր գորշ ամպերով, ճայթում էր որոտը և սկսվում էր ամառային զով, հաճելի ու հորդառատ անձրևը:

Երբ հաջորդ օրը հորեղբայրս անհետաձգելի գործ էր ունենում, գիշերը մի քանի անգամ դուրս էր գալիս, դիտում երկինքը, լուսինը, աստղերը, ունկնդրում թռչունների ձայնին, հոտոտում օդը և անսխալ եզրակացության հանգում հաջորդ օրվա եղանակի մասին:

Պատահում էր, որ վաղ գարնանը դիտելով այս կամ այն բույսի առատ ծաղկումը, այս կամ այն միջատի բազմացման տեմպերը, անսխալ գուշակություններ էր անում սպասվող բերքի և ընդհանրապես սեզոնի բնույթի մասին: Հիշում եմ, մի անգամ նկատելով, որ մայիսյան բզեզները անսովոր առատությամբ են բազմացել, նա անհանգստացավ, դա խիստ երաշտի նշան համարելով: Եվ իրոք, գարնան և ամռան այդ ողջ սեզոնում ոչ մի կաթիլ անձրև չտեղաց, բերքը ոչնչացավ:

Հաճախ, դիտելով տնային կենդանիների վարքը, նա շտապեցնում էր.

— Խոտը հավաքեցեք, ուժեղ անձրև է տեղալու: Խոտի դեզը ամրացրեք, շուտով ուժեղ քամի է բարձրանալու, խոտը ցրիվ կտա: Մաքրեցեք տան կողքի առուն, որպեսզի հեղեղի ջուրը տուն չլցվի...

Դիտելով աշնանային մի շարք երևույթներ, հատկապես վայրի կենդանիների վարքը, նա գրեթե միշտ անսխալ գուշակում էր գալիք ձմռան բնույթը, ձյան առատությունը և համապատասխան կարգադրություններ անում վառելիքի, կենդանիների կերի պաշարի կուտակման մասին:

Հորեղբայրս միշտ հիշեցնում էր, որ բնությունը մի ամբողջություն է, որտեղ բոլոր օրգանիզմները, երևույթները, անկենդան բնության տարրերը, հազարավոր անտեսանելի թելերով կապված են մեկը մյուսի հետ, մեկը պայմանավորված է մյուսով: Նրա կարծիքով բնության ընդհանուր համակարգում, ընդհանուր ներդաշնակությունից դուրս ավելորդ ոչինչ չկա: Դիտելով բնության մի որևիցէ երևույթ, կենդանու կամ բույսի վարք, կարելի է գուշակել դրա հետևանքը, քանի որ բնության ամեն մի երևույթ ունի իր պատճառը:

Հորեղբորս ազդեցության տակ էր, որ հետագայում ընտրեցի կենսաբանի մասնագիտությունը: Երկար տարիներ գրադարաններում ու բնության գրկում ուսումնասիրելով կենսաբանական գիտության գաղտնիքները, անձնական փորձով համոզվեցի, որ բնությունը լավ ճանաչողները հեշտությամբ են տեսնում առարկաների ու երևույթների միջև գոյություն ունեցող աներևույթ կապը: Բնությունը մի հետաքրքիր, սակայն բարդ լեզվով ու զարմանահրաշ տառերով գրված գիրք է, որն ընթերցելու համար մեծ փորձ ու գիտելիքներ են անհրաժեշտ: Եթե մենք կարողանանք կարդալ «բնության գիրքը», ապա անսխալ կերպով կարող ենք կողմնորոշվել ամենուրեք, պատասխան գտնելով բոլոր հանելուկային ու զարմանալի երևույթների, հարցերի համար:

Հաջորդ համարներից սկսած «Սովորիր կարդալ բնության գիրքը» խորագրի տակ հոդվածներ կտպագրենք բույսերի և կենդանիների վարքի, բնության զանազան երևույթների միջոցով կանխագուշակումներ անելու մասին:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15:
Հեռախոսներ՝ 56-32-72, 56-06-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 6 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981



Շապիկի առաջին էջը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 21.4.1981 թ.: Ստորագրված է տպագրության 5.6.1981 թ.: ՎՖ 08628: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն: 3,0 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61662: Պատվեր 884: Գինը 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. 2:

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.

# ԺԱՄԱՆՑ




Արջուկը ո՞ր կողմը պետք է պտտի թափանիվը, որպեսզի առաջ շարժվի:

Ո՞ր հատվածը պետք է տեղադրել լաբիրինթոսի կենտրոնում, որպեսզի հնարավոր լինի Ա կետից գնալ Բ կետը:



ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ

ԻՆԴԵՔՍ 77806








Հնակառույց շենքեր Աբովյան և Սպանդարյան փողոցներում:

Լուսանկարները՝ ԴԱՎԻԹ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ

